## Մեր հեղինակներին

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված՝ նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ


10 ՀՈԿՏԵՄԲԵՐ, 1981
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.
**Выходит один раз в месяц на армянском языке**

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


*ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ Վիետնամի կոմունիստական կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար Լե Զուանի պատվին տրված ճաշկերույթի ժամանակ 1981 թ. սեպտեմբերի 7-ին . . . . . 3*

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

*Ս. Կ. ՊՈՂՈՍՅԱՆ— Գաղափարական ներազդման հզոր միջոցը . . . . . 5*

*Վ. Ի. ՄՈՐՈԶՈՎ— Տնտեսական համագործակցության ստրատեգիան . 15*

*Ա. Ա. ՄԽԻԹԱՐՅԱՆ— Գիտության և տեխնիկայի դերը հասարակական առաջընթացի գործում . . . . . . . . . 24*

*Վ. Հ. ԲԱՂԴԱԳՅՈՒԼՅԱՆ— Խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքի զարգացումը ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումներում . . . . 31*

ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՊՐԱԿՏԻԿԱ

*Մ. Ս. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ— Ամուր կարգապահություն բոլոր օղակներում . . 38*

ՏՆՏԵՍԱՎԱՐԵԼ ԽՆԱՅՈՂԱԲԱՐ

*Ս. Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ— Կիլովատ-ժամի գինը . . . . . . 46*

*Հ. Մ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ, Կ. Ա. ՄԱՐՈՒԽՅԱՆ— Մեքենատրակտորային պարկի համակենտրոնացման անհրաժեշտությունը . . . . . 55*

*ՊԱՏՎԱԿԱՆ ՇԱՔԱՐՅԱՆ— Մարդու, հողի և մետաղի դաշնությամբ . . 60*

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ 60-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

*Պանծալի ուղի—67, ՄԱՄԲՐԵ ԳԱՐԱԳԱՇ— Հավերժ երիտասարդ հոբելյարին—73, Ֆ. Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ— Կոմերիտականների լավ նախաձեռնությունները—77, ՀՐԱՆՈՒՇ ՀԱԿՈԲՅԱՆ— Դպրոցին՝ կոմերիտական հոգատարություն—82։*

ՄԵՐ ՍԵՂԱՆԻ ԳՐՔԵՐԸ

*Ջ. Լ. ՄՈՎՍԻՍՅԱՆ— Մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների մատենագիտությունը Հայաստանում . . . . . 87*



ԵՐԵՎԱՆ ☆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ


РЕЧЬ ТОВАРИЩА Л. И. БРЕЖНЕВА на обеде в честь генерального секретаря ЦК Коммунистической партии Вьетнама Ле Зуана 7 сентября 1981 года . . . . . 3

РЕШЕНИЯ XXVI СЪЕЗДА КПСС—В ДЕЙСТВИИ

С. К. ПОГОСЯН — Могучее средство идеологического воздействия . . . . . . . . 5

В. И. МОРОЗОВ — Стратегия экономического сотрудничества 15

А. А. МХИТАРЯН — Роль науки и техники в общественном прогрессе . . . . . . . 24

В. О. БАГДАГЮЛЯН — Развитие ленинского принципа мирного сосуществования в решениях XXVI съезда КПСС . 31

ТЕОРИЯ И ПРАКТИКА ПАРТИЙНОГО СТРОИТЕЛЬСТВА

М. С. АЙРАПЕТЯН — Твердая дисциплина во всех звеньях . 38

ХОЗЯЙСТВОВАТЬ ЭКОНОМНО

С. Г. ОВСЕПЯН — Цена киловатт-часа . . . . . 46

Г. М. МАМИКОНЯН, К. А. МАРУХЯН — Необходимость концентрации машинно-тракторного парка . . . . 55

ПАТВАКАН ШАКАРЯН — В дружбе с землей и металлом . 60

К 60-ЛЕТИЮ КОМСОМОЛА АРМЕНИИ

Славный путь—67, МАМБРЕ ГАРАГАШ—Вечно молодому юбиляру—73, Ф. А. МОВСЕСЯН — Добрые начинания комсомольцев—77, ГРАНУШ АКОПЯН — Школе—комсомольскую заботу—82

НАШИ НАСТОЛЬНЫЕ КНИГИ

Дж. Л. МОВСЕСЯН — Библиография трудов классиков марксизма-ленинизма в Армении . . . . . 87






# ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՃԱՌԸ

## ՎԻԵՏՆԱՄԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԼԵ ԶՈՒԱՆԻ ՊԱՏՎԻՆ ՏՐՎԱԾ ՃԱՇԿԵՐՈՒՅԹԻ ԺԱՄԱՆԱԿ 1981 Թ. ՍԵՊՏԵՄԲԵՐԻ 7-ԻՆ

Թանկագին ընկեր Լե Զուան։

Հարգելի ընկերնե՛ր։

Կարելի է ասել, որ այսօր մեզ մոտ Վիետնամի օր է։ Առավոտվանից մենք մի քանի ժամ նվիրեցինք բանակցություններին։ Իսկ այժմ կրկին զրուցում ենք վիետնամցի բարեկամների հետ, արդեն ոչ պաշտոնական մթնոլորտում՝ ճաշասեղանի շուրջը։

Ամենից առաջ ուզում եմ գոհունակություն հայտնել բանակցությունների արդյունքների առթիվ։ Դրանք հավաստեցին, որ այսօրվա խնդիրների մասին մեր պատկերացումները, ապագայի մեր հայացքները իրարից չեն տարբերվում։ Դրանք համանման են։

Կայացած բանակցությունները որևէ գաղտնիք չեն բովանդակում։ Մենք զբաղվում էինք սովետա-վիետնամական համագործակցության հեռանկարային հարցերով։ Առաջիկա տարիներին այդ համագործակցությունը կընդլայնվի բոլոր ասպարեզներում։ Կմեծանա Սովետական Միության օժանդակությունը Վիետնամում սոցիալիստական շինարարությանը։ Մենք վիետնամցի բարեկամներին կօգնենք ավելի լավ և ավելի լրիվ չափով օգտագործելու սեփական հարուստ ռեսուրսները։

Բնական է, որ ներկայիս անհանգիստ ժամանակներում հարկ եղավ պատշաճ ուշադրություն դարձնել միջազգային պրոբլեմներին։

Ընկեր Լե Զուանի հետ բանակցությունները, ինչպես և վերջերս Ղրիմում կայացած հանդիպումները, պարզորոշ վկայում են. արտաքին քաղաքականության մեջ մեր ընդհանուր հավատամքը խաղաղությունն է, խաղաղությունն ամենքի համար, հուսալի, արդար և անսասան խաղաղությունը։

Այդպիսի խաղաղության հասնելու համար հարկավոր են ոչ այնքան լավ խոսքեր, որքան ռեալ գործեր, մյուս պետությունների իրավունքների ու շահերի հետ գործնականորեն հաշվի նստելու պատրաստակամություն։ Եվ, իհարկե, պահանջվում է համբերությամբ բանակցությունների սեղանի շուրջը վիճելի հարցերի լուծումներ որոնելու կարողություն։

Իսկ դատողություններ անել «զսպվածության ու փոխադարձության» մասին և միաժամանակ վարել պրովոկացիոն, հրահրիչ քաղաքականություն, այդ թվում սպառազինությունների բնագավառում, նշանակում է ծնել անվստահություն, խարխլել խաղաղության հիմքերը։

Բոլորից ավելի ուժեղ դառնալու ձգտումը, համաշխարհային առաջնու-

թյան հավակնելը, այս ամենն արդեն եղել է ոչ հեռավոր պատմության մեջ, և լավ հայտնի է, թե նման փորձերը ինչով են ավարտվել:

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա մենք երբեք չենք որոնել ու չենք որոնում ռազմական գերազանցություն: Մեր երկրի անվտանգության և մեր դաշնակիցների անվտանգության հուսալի պաշտպանության նկատմամբ հոգածությունից հեռու մենք չենք գնում և մտադիր չենք գնալ: Սովետական Միությունը մշտապես կոչ է անում հրաժարվել զենքի նոր, ավելի ահեղ տեսակների ստեղծումից: Բայց կասեմ ամենայն պատասխանատվությամբ. մենք անտարբեր չենք մնա ԱՄՆ-ի և ՆԱՏՕ-ի մյուս մասնակիցների զինանոցներում այդպիսի զենքի երևան գալու նկատմամբ: Եթե դա տեղի ունենա, ապա սովետական զինված ուժերը կունենան այդ զենքին հակակշիռ պատշաճ զենք:

Մեր կուսակցության XXVI համագումարը առաջ քաշեց 80-ական թվականների համար խաղաղության լայն ծրագիր: Սովետական առաջարկությունները հասցեագրված էին բոլոր երկրներին: Դրանք կոչված են ծառայելու աշխարհի բոլոր շրջաններում մթնոլորտի առողջացմանը:

Դա լիովին վերաբերում է Ասիային: Ուր-ուր, իսկ Ասիայում խաղաղության կարիքը շատ սուր է: Զգալի թվով ասիական երկրներում բնակչության մեկ շնչին ընկնող ազգային եկամուտը գտնվում է ամենացածր մակարդակի վրա: Եվ հենց այնտեղ՝ Ասիայում, չմարած հին կոնֆլիկտներին ավելանում են նորերը: Չար հողմեր են անցնում Հարավարևելյան Ասիայի վրայով: Իմպերիալիզմի և հեգեմոնիզմի ուժերը վախենում են խաղաղ Ասիայից:

Ողբերգական է, որ Ասիայի խոշորագույն պետության՝ Չինաստանի ղեկավարները երկրի ուժերը վատնում են այնպիսի մի աննորհակալ գործի վրա, ինչպիսին է միջազգային կլիմայի վատացումը: Նրանք ձգտում են իրար հետ գժտեցնել ասիական երկրներին, թշնամանք ծնել Սովետական Միության, Վիետնամի նկատմամբ, սոցիալիզմի աշխարհի նկատմամբ: Կրկնում եմ, ողբերգական է, և ամենից առաջ հենց չին ժողովրդի համար:

Պեկինին հակառակ, ասիական շատ պետություններ հանդես են գալիս կայուն բարիդրացիական հարաբերությունների օգտին: Նրանք հլու-հնազանդ չեն նաև Վաշինգտոնին: Նրանք ուզում են ապրել անկախ, նման դիրքավորումը կարող է միայն հարգանք հարուցել: Ասիայի տերեր կարող են լինել միայն իրենք՝ խաղաղություն ու ազատություն տենչացող ասիական ժողովուրդները իրենք: Նրանք իրավունք ունեն մերժելու դրսի ամեն մի միջամտություն իրենց գործերին, իրենց կենսական շահերի ոլորտին:

Մենք ողջունում ենք Հնդկաստանի, Հնդկաչինի երկրների, ասիական մյուս պետությունների միջազգային ազդեցության աճը, նրանց գործուն մասնակցությունը համաշխարհային քաղաքականությանը: Մենք ողջունում ենք Վիետնամի ձգտումը Լաոսի ու Կամպուչիայի հետ համատեղ հասնելու այն բանին, որ ամբողջ Հարավարևելյան Ասիան դառնա խաղաղության և կայունության գոտի:

Միջազգային քաղաքականության մեջ, ինչպես և այլ գործերում, կոմունիստները կանգնած են դասակարգային դիրքերում: Նրանք արտահայտում են աշխատավորների շահերը, ժողովուրդների շահերը: Հենց դրա համար էլ նրանք հաստատապես հանդես են գալիս լարվածության թուլացման օգտին, զինաթափման և բոլոր պետությունների խաղաղ համագործակցության օգտին:

Առաջարկում եմ՝

մեր թանկագին հյուրի՝ վիետնամցի կոմունիստների ականավոր ղեկավար, ինտերնացիոնալիստ-լենինյան ընկեր Լե Զուանի կենացը.

եղբայրական վիետնամական ժողովրդի կենացը. նրա ազնվությունն ու անձնվիրությունը ճանաչում կգտնեն, անպայման ճանաչում կգտնեն ամբողջ աշխարհում.

սովետա-վիետնամական սերտ բարեկամության կենացը.

աշխարհի խաղաղության կենացը:

---

## ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՆԵՐԱԶԴՄԱՆ ՀԶՈՐ ՄԻՋՈՑԸ

**Ս. Կ. ՊՈՂՈՍՅԱՆ**
Հայկական ՍՍՀ հեռուստատեսության և ռադիոյի հաղորդումների պետական կոմիտեի նախագահ

*Երկար ժամանակ չի անցել ՍՄԿԿ XXVI համագումարի ավարտից, բայց արդեն ակնհայտ է նրա որոշումների խոր ազդեցությունը մեր հասարակության սոցիալ-քաղաքական և հոգևոր կյանքի վրա: Համագումարը նոր մեծ խնդիրներ դրեց նաև մասսայական ինֆորմացիայի մարմինների, այդ թվում և սովետական հեռուստատեսության ու ռադիոյի առջև:*

*Հայաստանի հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների պետական կոմիտեի կոլեկտիվն իր կարևորագույն խնդիրը համարում է համագումարի նյութերի խոր ու բազմակողմանի պրոպագանդումը, նրա առաջադրած ծրագրի իրականացմամբ՝ աշխատավորական կոլեկտիվների ծավալած պայքարի արդյունավետության բարձրացումը: Այսօր առանձնահատուկ դեր է հատկացված կոլեկտիվի անդամների քաղաքական ուսուցմանը, որովհետև դա է հեռուստատեսության և ռադիոյի արդյունավետ աշխատանքի գրավականը: Պետական կոմիտեն և նրա կուսակցական կազմակերպությունն իրականացնում են մի շարք միջոցառումներ, որպեսզի կոլեկտիվի անդամները խոր ու համակողմանի յուրացնեն XXVI համագումարի նյութերը: Քաղաքական լուսավորության օղակների հնարավորություններն արդյունավետ օգտագործելուն զուգընթաց կազմակերպվում են հանդիպումներ հանրապետության ղեկավար աշխատողների, գիտնականների, արտադրության հրամանատարների հետ: Գործնական քայլեր են արվում ստեղծագործական միությունների հնարավորություններն օգտագործելու նպատակով: Նախատեսվում է ժուռնալիստների, կինոաշխատողների, կոմպոզիտորների տներում կազմակերպել ռադիոյի և հեռուստատեսության աշխատողների օրեր, որոնք կնպաստեն ստեղծագործական կոլեկտիվի պրոֆեսիոնալ վարպետության և գաղափարական-գեղագիտական մակարդակի բարձրացմանը:*

*Ըստ մշակված թեմատիկայի, գլխավոր խմբագրությունների ստեղծագործական կոլեկտիվները սիստեմատիկաբար հանդիպումներ են ունենում համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների պատասխանատու աշխատողների հետ, քննարկում տվյալ ճյուղի՝ տասնմեկերորդ հնգամյակի խնդիրները:*

*Այժմ հեռուստատեսությունն ու ռադիոն իրենց հիմնական ուշադրությունը կենտրոնացնում են ՍՄԿԿ XXVI համագումարի առաջադրած առանցքային խնդիրների լուծման ընթացքի վրա՝ տնտեսության դինամիկ զարգացմամբ սովետական ժողովրդի կենսամակարդակի բարձրացումն ապահովելու և հանուն խաղաղության կայունացման Սովետական Միության մղած պայքարին սատար լինելու համար:*

*Հեռուստադիտողներն ու ռադիոլսողները լավ ընդունեցին հեռուստատեսային և ռադիոընդունարան հաղորդաշարը, որն արժանացավ «Պրավդա» թերթի դրվատանքին: Բայց, ցավոք, հետզհետե նվազեց դրա սրությունը, և այն փոխա-*

Հեռուստատեսության և ռադիոյի աշխատանքների հաջողությունը մեծ մասամբ պայմանավորված է ճիշտ և կայուն հաղորդացանկով։ Հարկ է ասել, որ հաջողվել է ստեղծել ռադիո և հեռուստատեսային հաղորդումների կայուն հաղորդացանկ, որը հիմնականում բավարարում է այդ ծրագրերից ակնկալվող պահանջները։ Սակայն հեռուստատեսության հաղորդացանկն ունի նաև թերություններ։ Հայտնի է, որ հեռուստահաղորդումները առավել դիտելի են երեկոյան ժամերին։ Սակայն միշտ չէ, որ մեզ հաջողվում է այդ ժամանակահատվածներում ներկայացնել գեղարվեստական ու գաղափարական բարձրորակ հաղորդումներ, կինոնկարներ, ներկայացումներ, համերգներ։ Նկատելի է, որ միևնույն ժամանակահատվածում թույլ է տրվում թեմաների կրկնություն, որն անբավարար կոորդինացման հետևանք է։ Դեռևս զգալի են եթերում կարգապահության խախտումները։

Մինչև այս տարի հանրապետական հեռուստահաղորդումների առաջին ծրագիրը համարվում էր խառը ծրագիր։ Այն ընդգրկում էր նաև կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրի հաղորդումները՝ օրվա ընթացքում 4—5 ժամ ընդհանուր տևողությամբ։ Այս տարվանից մեր առաջին ծրագիրը դարձել է ինքնուրույն։ Այս միջոցառումը լրացուցիչ լուրջ ջանքեր է պահանջում կոլեկտիվից. անհրաժեշտ է հաղորդաժամանակը լրացնել բարձրորակ հաղորդումներով, այսինքն՝ օգտագործել այն ժամանակահատվածները (4—5 ժամ), որ նախկինում զբաղեցնում էին կենտրոնական հեռուստատեսության հաղորդումները։ Առաջին ամիսների փորձը ցույց է տալիս, որ կոլեկտիվին հիմնականում հաջողվում է լուծելու այդ խնդիրը։

Միջոցներ են ձեռնարկվում՝ հաղորդացանկում մեծացնելու հետաքրքրաշարժ ծրագրերի, դերասանական կատարում պահանջող բարդ հաղորդումների տեսակարար կշիռը։

Վերջին տարիներս մի շարք միջոցառումներ են իրականացվել հեռուստատեսության նյութատեխնիկական բազան ամրապնդելու նպատակով։ Դրա շնորհիվ զգալիորեն մեծացել են հաղորդումների պրոֆեսիոնալ-տեխնիկական մակարդակի բարձրացման հնարավորությունները։ Եթե 1970 թվականին հայկական հեռուստատեսությունը երկու ժամ սեփական հաղորդումներ իրականացնելու համար ուներ միայն մեկ մակետային ստուդիա, երկու (սև-սպիտակ) շարժական կայան և յոթ կինոխցիկ, ապա այժմ 6,5 ժամ սեփական հաղորդումների համար ունենք 6 ստուդիա (որոնցից երկուսը՝ մեծ), 6 շարժական կայան (որոնցից չորսը՝ գունավոր), 14 տեսագրման մագնիտոֆոն, մոտ 50 կինոխցիկ, տեխնիկապես հագեցված ժապավենների մշակման արտադրամաս։ Եթե 1970 թվականին հաղորդումներին սպասարկում էին 18 միավոր տրանսպորտային միջոցներ, դրանց թիվն այժմ անցել է 100-ից։

Սակայն այսօր էլ հաղորդումների տեխնիկական մակարդակը բարձր չէ։ Դրա հիմնական պատճառներից մեկը բարձրորակ ինժեներատեխնիկական աշխատողների պակասն է։ Այժմ կոմիտեի սիստեմում թափուր են 85 ինժեներական հաստիքներ, որոնց մի մասը զբաղեցնում են միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցողներ. նրանց մեծ մասը չի կարողանում ինչպես հարկն է գործադրել ժամանակակից սարքավորումները։ Հանրապետության պետպլանը պետք է այս վիճակը հաշվի առնի և ձեռնարկի գործնական միջոցառումներ հեռուստատեսությունը բարձրորակ ինժեներական կադրերով ապահովելու համար։

Մեր երկրում տարեցտարի ավելի ու ավելի մեծ միջոցներ են ներդրվում հեռուստատեսության և ռադիոյի զարգացման նպատակով։ Հայաստանում մի քանի տարի առաջ գործարկվեց «Օրբիտա—2» սիստեմի տիեզերական հաղորդիչ կայանը, կառուցվել է 316,5 մետր բարձրությամբ հեռուստատեսային աշտարակը, դրանց շնորհիվ հնարավոր դարձավ հանրապետությունում ընդունել հեռուստատեսային 5 ծրագիր՝ 3-ը կենտրոնական, 2-ը՝ հայկական հեռուստատեսությամբ։ Այս առումով մեր հանրապետությունը երկրում գրավում է առաջնակարգ տեղերից մեկը։ Հայաստանի աշխատավորության 98 տոկոսը հնարավորություն ունի դիտելու հանրապետական հեռուստահաղորդումների առաջին, 93,4 տոկոսը՝ կենտրոնական հեռուստատեսության առաջին ծրագրերը։ Այս



ցուցանիշով մենք Միությունում գրավում ենք երրորդ տեղը։ Այս տարի հանրապետությունում օրվա ընթացքում ընդունվող հեռուստահաղորդումների ծավալը հասավ 42 ժամի, որից 13,5-ը հանրապետական հաղորդումներն են։ Մեր հեռուստատեսությունն ավարտում է լրիվ անցումը գունավոր հաղորդումներին։

Հանրապետական ռադիոն օրվա ընթացքում 3 ծրագրերով եթեր է արձակում 54 ժամ հաղորդումներ, որից 38,5-ը՝ հանրապետական ծրագրերն են։ Ավելի քան 8 ժամ հաղորդումներ են տրվում արտասահմանի համար։

Բնորոշ է հետևյալ փաստը. ամերիկացիների կողմից Թուրքիայում բնակվող քրդերի շրջանում կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ նրանց 85 տոկոսը լսում է Հայաստանի ռադիոյի հաղորդումները։ Ամերիկացիները այդ ուսումնասիրությունից հետո վերակառուցեցին Մերձավոր Արևելքին հասցեագրվող իրենց հաղորդումները, ստեղծեցին հզոր ռադիոկայաններ, սակայն վիճակի մեջ էական փոփոխություններ տեղի չեն ունեցել։ Հանրահայտ իրողություն է, որ ռադիոն իմպերիալիզմի գաղափարական դիվերսիայում առաջնակարգ դեր է խաղում։ Այժմ մեր երկրի արևմտյան սահմանի երկայնքով գործում են Արևմուտքի 1200 խոշոր ռադիոկայաններ։ Դեռևս 1979 թվականին ԱՄՆ-ի նախկին պրեզիդենտ Քարտերը ստորագրեց օրինագիծ, որով նախատեսվում է կառուցելու 11 հզոր ռադիոկայան՝ ուղղված Սովետական Միության դեմ։ Վերակառուցվել են Սովետական Միությանը հասցեագրված արևմտյան ռադիոկայանների ծրագրերը։ Դրանք գործում են նոր հրահանգներով։ Օրինակ. «Ազատ Եվրոպա» ռադիոկայանի կանոնադրության մեջ մասնավորապես ասված է՝ «Թշնամություն սերմանել Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների ժողովուրդների միջև։ Խախտել ՍՍՀՄ-ի նկատմամբ եղած վստահությունը, սասանել հավատը սոցիալիստական երկրների ռազմական և տնտեսական հզորության նկատմամբ, հրահրել ազգայնական տրամադրություններ»։

Այսօր հայերեն հաղորդումներ են տալիս արտասահմանյան 7 ռադիոկայաններ։ Դրանցից առավել ստահոդը «Ազատությունն» է, որի հայկական հաղորդումների բաժինը վարում են պատերազմի շրջանում սովետական բանակը դասալքած մի քանի հայրենադավներ, որոնք առանձին ջանադրությամբ են ծառայում իմպերիալիզմի լագերում։ Նման մարդկանցով համալրված խմբագրությունն է, որ ամեն օր եթեր է արձակում ամեն տեսակի զրպարտանք ու կեղծիք մեր երկրի ու մեր հանրապետության մասին։

Կապիտալիստական աշխարհի հեռուստառադիոպրոպագանդան տարեցտարի ավելի է ծավալում իր քայքայիչ գործունեությունը, դառնում ավելի վտանգավոր։ Մենք պարտավոր ենք հաշվի առնել այդ հանգամանքը և առավել նախահարձակ լինել։ Դա հատկապես վերաբերում է արտասահմանի համար տրվող հաղորդումներին՝ հայրենիք-սփյուռք կապի ամենաառօրեական և ամենաօգտավետ միջոցներին։ Դրանք պետք է կարողանան սփյուռքում ապրող մեր հայրենակիցներին հաղորդել հայրենիքի ճշմարիտ խոսքը, ի չիք դարձնել Արևմուտքի ռադիոկայանների ազդեցությունը։ Գործի շահերը պահանջում են առանց հապաղելու լուծել հանրապետությունում նոր հաղորդիչ կայանների ստեղծման հարցը։ Հանրապետությունը կարիք ունի հզոր ռադիոկայանի, որը հնարավորություն կընձեռի Երևանի ձայնը հասցնելու աշխարհի տարբեր երկրների հայկական գաղութներին։

Հեռուստառադիոհաղորդումների ծավալի մեծացման, դրանց մակարդակի բարձրացման արդյունք են աշխատավորական լայն շրջանների աճող հետաքրքրությունը մեր ծրագրերի նկատմամբ։ Դրա վկայությունն է նամակների օրըստօրե ավելացող թիվը (1970 թվականի համեմատությամբ աշխատավորներից ստացվող նամակների թիվն աճել է 8 անգամ)։ Կոմիտեում ստեղծված է նամակների և հեռուստառադիոհաղորդումների արդյունավետությունն ուսումնասիրող գլխավոր խմբագրություն, որն զգալի գործ է կատարում լսարանի ուսումնասիրության և դրա հետ ունեցած կապի ամրապնդման մարզում։

Նամակներում բարձրացվում են շատ լուրջ հարցեր, որը հնարավորություն է ընձեռել դրանց մոտ 90 տոկոսն օգտագործելու հաղորդումներում։ Տարին մոտ 1200—1500 նամակ է ստացվում արտասահմանյան տարբեր երկրներից, որոնց

ճնշող մեծամասնությունը արտասահմանցի ունկնդիրների ջերմ զգացմունքների
արտահայտությունն են մեր երկրի, մեր հանրապետության նկատմամբ։
Խոսելով խմբագրություններում ստացվող նամակների մասին, հարկ ենք
համարում նշել, որ դրանցում մեծ մասամբ ռադիոհեռուստատեսային ծրագրե-
րի նկատմամբ գոհունակություն արտահայտող նամակներ են։ Կան նաև քըն-
նադատական ճիշտ ու տեղին դիտողություններ, խելացի առաջարկություններ
պարունակող նամակներ։
Հանրապետության ամենատարբեր ծայրերից ստացվող այդ նամակնե-
րում արծարծվում են հեռուստատեսության և ռադիոյի առջև ծառացած խըն-
դիրները, պարունակում են խոհեր նրանց վաղվա օրվա վերաբերյալ։ Օրինակ,
Մարտունուց գրում են, որ աճող սերնդի համար տրվող հաղորդումներում
պետք է ներգրավել հանրապետության ամենահեղինակավոր և ամենաբանի-
մաց մարդկանց։ Թումանյանից մեզ կոչ են անում «Երիտասարդության մեջ
գտեք ձեր հաղորդումների հերոսներին։ Չէ՞ որ ձեր հաղորդումներում հաճախ
պակասում է բնականությունը և ինչ-որ չինծու նախապատրաստվածությունը
ունկնդրին վանում է հաղորդումից»։ Իսկ Ստեփանավանից լրացնում են. «Հա-
ղորդումների ժամանակ չինծու տեսարաններ չպետք է ստեղծել, պետք է խու-
սափել անորոշ արտահայտություններից»։ Նամակագիրներից մեկը (Երևան)
հայտնում է իր կարծիքը, թե աճող սերնդին հասցեագրված հաղորդումներում
ինչ խնդիրների պետք է առանձնահատուկ ուշադրություն նվիրել։ Կոմունիս-
տական աշխարհայացքի ձևավորում, ընտանիք, սեր, ամուսնություն, ակտիվ
հանգստի կազմակերպում, մտերիմ զրույցներ։ Հեռուստատեսությունը պետք է
նկատի ունենա, գրում են նամակներում, որ հատկապես երիտասարդության
համար շատ կարևոր է կյանքի ստվերոտ կողմերի ձաղկումը, դրական օրինակի
պրոպագանդումը, երիտասարդությանը հուզում է ո՛չ միայն ընդհանուր գաղա-
փարը, այլև մերձավոր, կոնկրետ իդեալները։
Գորիսից մեզ գրում են. «Հեռուստատեսությունը թերությունների մասին
քիչ է խոսում։ Գորիսում, հայ աշուղների այդ հինավուրց շրջանում, այժմ չկա
ոչ մի գեղարվեստական ինքնագործունեության խմբակ։ Ոչ ոք չի հետաքրքըր-
վում, թե ինչու է այդպես։ Ուշադրություն դարձրեք. ժողովրդական մշակույթը
կտրվում է իր հիմքից։ Ցավալի է, որ ժողովրդական երգն ու պարը ստեղծվում
են ոչ թե գյուղերում, այլ մայրաքաղաքի արվեստի օջախներում։ Իսկ մեր գյու-
ղերում վերացել են զուռնան, դհոլն ու դուդուկը, թառն ու քամանչան։ Տխուր է,
շատ տխուր»։
Ամեն օր խմբագրություններում ստացվում են գործնական առաջարկու-
թյուններ պարունակող տասնյակ նամակներ։ Դրանք հսկայական օգնություն
են ստեղծագործական աշխատողներին, և հեռուստատեսությունն ու ռադիոն
պարտավոր են այսուհետև ավելի մեծ ուշադրությամբ ունկնդրել հեռուստադի-
տողների և ռադիոլսողների ձայնին, հոգալ, որ յուրաքանչյուր հաղորդում իրոք
դառնա լուրջ զրույց մարդկանց հետ, որ այդ հաղորդումները գործնականորեն
նպաստեն կուսակցության առաջադրած խնդիրների լուծմանը։
Կուսակցության XXVI համագումարը պահանջեց ոչ թե մասնակի, այլ ար-
մատապես վերակառուցել հեռուստառադիոծրագրերը։ Կենսաբուխ պահանջ, որ
թելադրվում է մասսայական ինֆորմացիայի միջոցների առջև ծառացած խըն-
դիրներով, նրանց հարաճուն դերով կուսակցության գաղափարական-դաստիա-
րակչական գործունեության ընդհանուր համակարգում, սովետական մարդկանց
քաղաքական ու կուլտուր-տեխնիկական մակարդակի վիթխարի աճով, ինչպես
նաև եթերում ընթացող գաղափարախոսական սուր պայքարով։
«Մեր կուսակցության քաղաքականությունը պարզ է,— ասել է ընկեր Լ. Ի.
Բրեժնևը։ — Եվ մենք պատրաստ ենք պատասխանելու ամեն տեսակ հարցերին,
որոնք առաջանում են սովետական մարդկանց մեջ։ Հարկավոր է համար-
ձակորեն անել այդ բանը, հիշելով, որ եթե մենք դրանց չենք պատասխանում,
ապա մեր երկրի թշնամիները ջանում են դրանից օգտվել սոցիալիզմը զրպար-
տելու համար»։

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՆ

**Վ. Ի. ՄՈՐՈԶՈՎ**
ՏՓԽ-ի քարտուղարության աշխատակից

ԱՆՇԵՂՈՐԵՆ ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ ԵՎ ԶԱՐԳԱՆՈՒՄ Է համաշ-
խարհային սոցիալիստական համագործակցությունը՝
նոր տիպի պետությունների իրավահավասար միությունը։ Անընդհատ մեծանում
է նրա կազմի մեջ մտնող երկրների տնտեսական պոտենցիալը։ Եվ որքան ընդ-
լայնվում ու խորանում է նրանց եղբայրական համագործակցությունը, այնքան
լիովին են բացահայտվում սոցիալիզմի՝ որպես առաջադեմ հասարակարգի,
առավելությունները։ Արդ սոցիալիստական երկրների տնտեսական և գիտա-
տեխնիկական կապերը հասել են բարձր մակարդակի և բնութագրվում են խո-
շոր մասշտաբայնությամբ ու լայն ընդգրկումով։ Հետևելով պրոլետարական և
սոցիալիստական ինտերնացիոնալիզմի լենինյան գաղափարներին, համագոր-
ծակցության կոմունիստական ու բանվորական կուսակցություններն ամենօրյա
ուշադրություն են նվիրում այդ կապերի ամրապնդմանն ու խորացմանը։ Դա
հատկապես վերաբերում է վերջին տասնամյակին, երբ համագործակցության
երկրները ձեռնամուխ եղան սոցիալիստական տնտեսական լայն ինտեգրացիա-
յի համաձայնեցված կուրսի իրականացմանը։
Սովետական Միությունն ակտիվորեն մասնակցում է ինտեգրացիոն միջո-
ցառումներին, որոնք իրենց օրենսդրական արտահայտությունն են գտնում երկրի
հնգամյա և տարեկան ժողովրդատնտեսական պլաններում։
ՍՄԿԿ-ն և սովետական կառավարությունը հետևողականորեն իրականաց-
նում են սոցիալիզմի մյուս երկրների հետ արտաքին տնտեսական կապերի ըստ
ամենայնի զարգացման և ամրապնդման կուրս։ Այն օրգանապես բխում է նրա
մարքսիստական-լենինյան ինտերնացիոնալիստական քաղաքականությունից, և
Սովետական Միությունը հնարավորություն է ընձեռում լրացուցիչ ռեզերվներ
ներգրավել սոցիալ-տնտեսական խնդիրների առավել հաջող լուծման, գիտա-
տեխնիկական առաջընթացի արագացման նպատակով։
Տասներորդ հնգամյակի տարիներին նկատելիորեն խորացան ՍՍՀՄ-ի ին-
տեգրացիոն տնտեսական կապերը ՏՓԽ-ի մյուս անդամ-երկրների հետ։ Այստեղ
կարևոր տեղ է հատկացվում սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի
կոմպլեքսային ծրագրի և համագործակցության երկրների երկարաժամկետ,
նպատակային այն ծրագրերի իրականացմանը, որոնք մշակել և ընդունել է
ՏՓԽ-ի բարձրագույն մարմինը՝ նրա սեսիան։ Կուսակցության XXVI համագու-
մարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի զեկուցման
մեջ ասված է, որ այժմ այդ ծրագրերը նյութականացվում են կոնկրետ գործե-
րում։ ՏՓԽ-ի երկրների էկոնոմիկայի, գիտության և տեխնիկայի բոլոր ճյուղե-
րում նկատելի են այդ աշխատանքի պտուղները։ Արդեն կնքված են 120 բազ-
մակողմ և հազարից ավելի երկկողմ համաձայնագրեր՝ արտադրության մաս-
նագիտացման և կոոպերացման հարցերի վերաբերյալ։ Ավարտվում է ՏՓԽ-ի
անդամ-երկրների 1981—1985 թթ. ժողովրդատնտեսական պլանների կոորդի-
նացումը։ ՍՄԿԿ XXVI համագումարում որպես եղբայրական երկրների համա-
տեղ հաջող գործունեության առավել նշանակալից արդյունք նշվեցին այնպիսի

խոշորագույն օբյեկտները, ինչպիսիք են երեք հազար կիլոմետր երկարությամբ
«Սոյուզ» գազամուղը, «Միր» էներգասիստեմը, որը համալրվել է էլեկտրահա-
ղորդման նոր գծերով, Ուստ-Իլիմի ցելյուլոզի գործարանը ՍՍՀՄ-ում, «Էրդենետ»
լեռնահարստացուցիչ կոմբինատը ՄԺՀ-ում, նիկելի գործարանները Կուբայում:

ՏՓԽ-ի անդամ-երկրները աշխարհի առավել դինամիկ զարգացած երկրնե-
րի խումբն են: 1971—1979 թթ. նրանց միագումար ազգային եկամուտն աճել է
62, իսկ արդյունաբերական արտադրանքի ծավալը՝ 79 տոկոսով: Նրանց տըն-
տեսական աճի տեմպերը կրկնակի բարձր են զարգացած կապիտալիստական
երկրների տեմպերից: ՏՓԽ-ի երկրներին բաժին է ընկնում էլեկտրաէներգիայի
համաշխարհային արտադրության 21 տոկոսը, քարածխի և անտրացիտի ար-
դյունահանման՝ 27, նավթի՝ 20, պողպատի ձուլման՝ 28, հանքային պարարտա-
նյութերի արտադրության 35 տոկոսը: Այդ երկրները «Ընդհանուր շուկայի»
պետություններից ավելի են արտադրում էլեկտրաէներգիա 1,3 անգամ, քարա-
ծուխ՝ 3, պողպատ՝ 1,5, ցեմենտ՝ 1,4, բրդյա գործվածքներ՝ 1,3 անգամ: ՏՓԽ-ի
երկրների հետազոտական և նախագծակոնստրուկտորական բազան բավակա-
նաչափ հզոր է (նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի համար ամբողջ աշխարհում
տրված պատենտների 20 տոկոսը), որպեսզի նրանք ինքնուրույնաբար լուծեն
ամենաբարդ տեխնիկական խնդիրները: Մշտական է եղբայրական երկրների
ուշադրությունը գյուղատնտեսական արտադրության, այն արդյունաբերական
հիմքի վրա փոխադրելու նկատմամբ: Կատարված աշխատանքը տալիս է իր շո-
շափելի արդյունքները. ամբողջությամբ վերցրած ՏՓԽ-ի երկրներում 1976—
1979 թթ. գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան ծա-
վալը 1964—1970 թթ. համանման ցուցանիշը գերազանցել է 30 տոկոսով, իսկ
1971—1975 թթ.՝ 9 տոկոսով: ՏՓԽ-ի երկրներում իրականացվում է ազգաբնակ-
չության նյութական բարեկեցության մակարդակի անշեղ աճ: Սոցիալիստական
համագործակցության եվրոպական երկրներում մեկ շնչի հաշվով սպառումը
հասել է մի շարք զարգացած կապիտալիստական երկրների մակարդակին:

ՏՓԽ-ի երկրների ազգային էկոնոմիկայի վերելքին էապես նպաստում են
նրանց տնտեսական սերտ համագործակցությունը և ինտեգրացիոն փոխգործո-
ղությունը: Հատկապես դրա շնորհիվ են ՏՓԽ-ի երկրները կարողանում երկարա-
ժամկետ պլանային հիման վրա բավարարել հումքի և վառելանյութի նկատմամբ
ման պահանջմունքները: Այսպես, 1979 թ. այդ պահանջմունքները փոխադարձ
մատակարարների հաշվին ՏՓԽ-ի երկրներում բավարարվել են երկաթահան-
քինը՝ 70 տոկոսով, քարածխինը՝ 93, կոքսինը՝ 94, նավթինը՝ 68 տոկոսով: Հում-
քով և էներգառեսուրսներով ինքնապահովվածության բարձր մակարդակը սո-
ցիալիստական համագործակցության երկրների տնտեսական կարևոր հաջողու-
թյունն է:

Միաժամանակ հարկ է նշել, որ ՏՓԽ-ի երկրներում նյութական արտադրու-
թյան զարգացումն ընթանում է բարդացված պայմաններում, և նրանք ստիպված
են գործ ունենալ ոչ հասարակ պրոբլեմների հետ: Դա, մասնավորապես, առըն-
վում է հումքի, վառելանյութի և էներգիայի ստացման համար ծախսերի աճի,
համաշխարհային տնտեսական անբարենպաստ կոնյուկտուրայի, համաշխար-
հային շուկայում հումքի և էներգակիր նյութերի գների բարձրացման, ՏՓԽ-ի
երկրներում էկոնոմիկայի զարգացումն արագացնելու հնարավորությունների և
ներքին ռեզերվների անբավարար օգտագործման հետ: Բացի այդ, մի շարք եղ-
բայրական երկրներում սպառվել են աշխատանքային ռեսուրսների լրացուցիչ
հոսքի աղբյուրները: Արտադրության անբավարար արդյունավետությունը, նոր
տեխնիկայի և տեխնոլոգիայի համեմատաբար դանդաղ յուրացումն արգելա-
կում են էկոնոմիկայի փոխադրումը զարգացման ինտենսիվ ուղու վրա, տեղիք
տալիս առանձին իրերի և ապրանքների պակասության: Վերջին տարիների դա-
ժան ձմեռները և ամառվա երաշտներն անբարենպաստ ազդեցություն ունեցան
ՏՓԽ-ի երկրների մեծամասնության տնտեսական զարգացման վրա: Այդ գոր-
ծոնների ազդեցությամբ 70-ական թվականների երկրորդ կեսից ՏՓԽ-ի երկրնե-
րի տնտեսական զարգացման տեմպերը մի փոքր նվազեցին: Սակայն միաժա-
մանակ անհրաժեշտ է ընդգծել, որ ՏՓԽ-ի երկրների առջև ծառացած դժվարու-
թյունները ոչինչ ընդհանուր չունեն կապիտալիզմի այնպիսի խրոնիկական հի-



վանդությունների հետ, ինչպես տնտեսական և էներգետիկ ճգնաժամերը, աճող
գործազրկությունը, ինֆլյացիան, միջազգային վալյուտային սիստեմի խափա-
նումները և այլն: Դրա հետ մեկտեղ, ՏՓԽ-ի երկրների առջև ծառացած պրոբ-
լեմները քիչ նշանակություն չունեն և իրենց նկատմամբ պահանջում են հատուկ
վերաբերմունք ու ջանքեր, անհրաժեշտ միջոցառումների ձեռնարկում, որոնք
հանգեցնեն ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացմանը,
գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների, աշխատանքի միջազգային սո-
ցիալիստական բաժանման առավելությունների առավել լրիվ և արագացված
օգտագործմանը, աշխատավորների ստեղծագործական ակտիվության ուժեղաց-
մանը: Ահա թե ինչու, վճռական նշանակություն տալով էկոնոմիկայի զարգաց-
ման ինտենսիվ ուղիներին, Սովետական Միությունը, եղբայրական մյուս եր-
կըրները առաջիկա տասնամյակը ինտենսիվ արտադրական և գիտատեխնիկա-
կան կոոպերացման ժամանակաշրջան դարձնելու կուրս են վերցրել: Ինքը
կյանքն է խնդիր դնում՝ ՏՓԽ-ի երկրների պլանների կոորդինացումը լրացնել
ամբողջությամբ վերցրած տնտեսական քաղաքականության համաձայնեցվա-
ծությամբ: Ինչպես շեշտվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, այսօր օրակարգում
են դրվում այնպիսի հարցեր, ինչպես տնտեսական մեխանիզմների կառուցվածքի մերձեցումը, փոխադարձ կոոպերացիայի մասնակից մինիստրությունների,
միավորումների և ձեռնարկությունների ուղղակի կապերի հետագա զարգա-
ցումը, համատեղ ֆիրմաների ստեղծումը, ինչպես նաև ՏՓԽ-ի անդամ-երկրների
ռեսուրսների ու ջանքերի միավորման այլ ձևերի օգտագործումը:

Այժմ ՍՍՀՄ-ի 1300 արտադրական կոլեկտիվներ մշտական կապեր են պահ-
պանում ՏՓԽ-ի մյուս երկրների մոտ 1500 ձեռնարկությունների հետ: Այդ կոն-
տակտների շրջանակներում իրականացվում է արտադրության կազմակերպման
առաջավոր փորձի փոխանակում, սոցիալիստական ինտերնացիոնալ մրցու-
թյուն: ՍՍՀՄ-ը եղբայրական մյուս երկրների հետ մեկտեղ ձգտում է, որպեսզի
տնտեսական կապերը լինեն փոխշահավետ: Մեր երկիրը փոխհամագործակցու-
թյան կարգով եղբայրական երկրներից ստանում է շատ տեսակի անհրաժեշտ
մեքենաներ ու սարքավորումներ, փոխադրական միջոցներ, լայն սպառման ապ-
րանքներ, հումքի առանձին տեսակներ: Իր հերթին ՍՍՀՄ-ը մատակարարում է
նավթ, գազ, հանքաքար, բամբակ, անտառափայտ, արդյունաբերական տար-
բեր իրեր: Անցած հինգ տարում ՍՍՀՄ-ը ՏՓԽ-ի անդամներից ստացել է 90 մլրդ
ռուբլի գումարով ապրանքներ, իսկ ՍՍՀՄ-ի մատակարարումների գումարը հա-
սել է 98 մլրդ ռուբլու: Այսօր արդեն դժվար է պատկերացնել սոցիալիստական
այս կամ այն երկրի զարգացումն առանց եղբայրական մյուս երկրների հետ կա-
պերի, առանց յուրաքանչյուր երկրի և ամբողջությամբ վերցրած համագոր-
ծակցության շահերի առավել ճիշտ և լրիվ զուգակցման: Դա մասնավորապես
վերաբերում է նավթի, գազի և հումքային ու արդյունաբերական այն մյուս ապ-
րանքների արտոնյալ գների սահմանմանը, որոնք ՏՓԽ-ի երկրները մատակա-
րարում են միմյանց: Դրանում իր գործնական դրսևորումն է ստանում սոցիա-
լիստական ինտերնացիոնալիզմը: Տասը տարվա ընթացքում Միջազգային ին-
վեստիցիոն բանկը, որի անդամներն են ՏՓԽ-ի երկրները, երկարաժամկետ
վարկերով ապահովել է 73 օբյեկտների կառուցումը՝ 9 միլիարդ փոխանցվող
ռուբլի ընդհանուր գումարով (փոխանցվող ռուբլին ՏՓԽ-ի երկրների կոլեկտիվ
վալյուտան է): Այդ օբյեկտներից 47-ը արդեն գործում են և հաջողությամբ
փոխհատուցում ներդրված միջոցները: Նշված բանկը վարկերի հիմնական մասը
հատկացնում է ՏՓԽ-ի առանձին երկրներին, նրանց տնտեսական պոտենցիալի
աճը բնորոշող կարևորագույն բնագավառների զարգացման համար (ջերմա-
էներգետիկ և մետալուրգիական արդյունաբերություն, մեքենաշինություն, էլեկ-
տրոնիկա, քիմիա, էլեկտրատեխնիկա): Բանկի ֆինանսական մասնակցությամբ
է կառուցվել «Սոյուզ» մագիստրալային գազամուղը: Բանկի ֆինանսավորմամբ
խոշոր օբյեկտներ են կառուցվել ու վերակառուցվել ՏՓԽ-ի բոլոր երկրներում:
Այժմ եղբայրական երկրների կոլեկտիվ բանկը հիմնական ուշադրությունը
կենտրոնացնում է համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրա-
գրերի իրականացման ֆինանսավորման վրա:

ՏՓԽ-ի երկրները նոր տասնամյակ են թևակոխել ավելի զարգացած արտա-

ծրագիրը, որի շրջանակներում իրականացվում են եղբայրական երկրների քաղաքացիների մասնակցությամբ ինտերնացիոնալ անձնակազմների տիեզերական թռիչքները։ Այդ երկրների գիտատեխնիկական փոխգործողությունն առավել մեծ չափերով է շաղկապվում համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրագրերի իրականացման հետ։ Դեռևս 1979 թ. փաստաթուղթ է ընդունվել մինչև 1990 թ. գիտատեխնիկական համագործակցության հիմնական ուղղությունների և այդ հիման վրա սպասվող տեխնիկատնտեսական արդյունքների վերաբերյալ։ Այդ փաստաթուղթն իր մեջ ներառում է համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրագրերից բխող 120 պրոբլեմ։

ՏՓԽ-ի երկրների ինտերնացիոնալ համագործակցության արդյունավետության համար կարևոր նշանակություն ունեն եղբայրական կուսակցությունների և պետությունների ղեկավարների երկկողմ և բազմակողմ հանդիպումները, մասնավորապես ընկեր Լ. Ի. Բրեժնևի հանդիպումներն ու զրույցները եղբայրական երկրների ղեկավարների հետ։

ՏՓԽ-ի երկրները երկկողմ և բազմակողմ հիման վրա ակտիվորեն համագործակցում են Հարավսլավիայի հետ, որը 1964 թ. ՏՓԽ-ի հետ հատուկ համաձայնագիր է ստորագրել։ Դրանով սահմանված են ՏՓԽ-ի և Հարավսլավիայի բազմակողմանի տնտեսական հարաբերությունները, այդ երկրի մասնակցությունը ՏՓԽ-ի մարմինների աշխատանքին։ ՏՓԽ-ի շրջանակներում Հարավսլավիայի համագործակցությունը շոշափելի արդյունքներ է տալիս։ Հարավսլավական կազմակերպություններն ու ձեռնարկությունները մասնակցում են արտադրության մասնագիտացման ու կոոպերացման և գիտատեխնիկական համագործակցության տասնյակ բազմակողմ համաձայնագրերին։ Հարավսլավիան ՏՓԽ-ի անդամ երկրների միջազգային տնտեսական մի շարք կազմակերպությունների անդամ է։

Սովետական Միությունը, ինչպես և ՏՓԽ-ի մյուս երկրները, տնտեսական և գիտատեխնիկական լայն կապեր է ստեղծել Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երիտասարդ պետությունների հետ։ Այդ կապերը շահավետ են երկուստեք։

Զարգացող պետությունների հարաբերությունների սիստեմում կարևոր տեղ ունի այդ երկրներում խոշոր տնտեսական կամ այլ օբյեկտների ստեղծումը։ 1980 թ. ՏՓԽ-ի երկրները առևտրատնտեսական հարաբերություններ ունեին զարգացող 90 պետությունների հետ։ ՏՓԽ-ի երկրները մշտապես ընդլայնում են համագործակցության երկարաժամկետ միջկառավարական համաձայնագրերի կնքման պրակտիկան։ Միայն ՍՍՀՄ-ը այդպիսի համաձայնագրեր ունի զարգացող 70 երկրների հետ։ Երիտասարդ պետությունների ազգային էկոնոմիկայի անկախ զարգացման համար հատկապես կարևոր նշանակություն ունեն ՍՍՀՄ-ից և ՏՓԽ-ի մյուս երկրներից այնպիսի մեքենաների ու սարքավորումների մատակարարումները, որոնք նախատեսված են մեքենաշինության, մետալուրգիայի, էներգետիկայի, արդյունահանող ու վերամշակող արդյունաբերության և էկոնոմիկայի մյուս հանգուցային ճյուղերի համար։

Զարգացող երկրների քաղաքական և տնտեսական անկախության ամրապնդմանը էապես նպաստում է ՏՓԽ-ի հետ համագործակցությունը՝ արդյունաբերական, էներգետիկ, գյուղատնտեսական և այլ օբյեկտների կառուցման ասպարեզում։ ՍՍՀՄ-ի մասնակցությամբ արդեն ավարտված կառույցների թվում քիչ չեն խոշոր, հաճախ էլ զարգացող երկրների էկոնոմիկայի համար առաջատար օբյեկտները։ Օրինակ, կարելի է հիշատակել հիդրոէներգետիկ կոմպլեքսը Սիրիայում, որը տալիս է երկրում արտադրվող էլեկտրաէներգիայի 70 տոկոսը, 2 միլիոն տոննա պողպատի կարողությամբ մետալուրգիական գործարանը Ալժիրում, տարեկան 2,5 միլիոն տոննա բոքսիտներ արդյունահանող ձեռնարկությունը Գվինեայում և այլն։ ՍՍՀՄ-ը իր հնարավորությունների չափով օգնում է Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երիտասարդ պետություններին ինժեներների, տեխնիկների, որակավորված բանվորների, բժիշկների, ուսուցիչների ազգային կադրեր պատրաստելու գործում։ Այդ երկրների շինարարական հրապարակներում, արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ, հիվանդանոցներում և ուսումնական հաստատություններում աշխատում են



տասնյակ հազարավոր սովետական մասնագետներ։ Առանձնապես կայուն ու բազմակողմանի են ՍՍՀՄ-ի տնտեսական և գիտատեխնիկական կապերը Հնդկաստանի հետ։ Սովետա-հնդկական բարեկամությունն ու համագործակցությունը երկու երկրներում դարձել է արմատավորված ժողովրդական ավանդույթ։ Սովետական և հնդկական ղեկավարների մշտական, կանոնավոր բարձր մակարդակի հանդիպումներն ու բանակցություններն ավելի ու ավելի են առաջ մղում երկու երկրների հարաբերությունների ամբողջ կոմպլեքսը։

Զարգացող երկրների էկոնոմիկայի շատ բնագավառներում ՏՓԽ-ի երկրների համագործակցությունն ուղեկցվում է առաջավոր տեխնոլոգիայի, տեխնիկական փաստաթղթերի, արտադրական փորձի հաղորդմամբ։ Դա երիտասարդ պետություններին հնարավորություն է տալիս արդի տեխնիկական մակարդակով կազմակերպելու այնպիսի կարևոր արտադրանքների թողարկումը, ինչպես շոգետուրբինները, էքսկավատորները, տրակտորները, գյուղատնտեսական տարբեր մեքենաները։ ՏՓԽ-ի երկրները զգալի չափերով բազմակողմանի ինտերնացիոնալ տնտեսական և տեխնիկական օգնություն են ցույց տալիս ազատագրված այն երկրներին, որոնք ընտրել են զարգացման սոցիալիստական կողմնորոշման ուղին. Լաոսի Ժողովրդադեմոկրատական Հանրապետությանը, Անգոլայի Ժողովրդական Հանրապետությանը, Մոզամբիկի Ժողովրդական Հանրապետությանը, Սոցիալիստական Եթովպիային, Եմենի Ժողովրդական Դեմոկրատական Հանրապետությանը, Կամպուչիայի Ժողովրդական Հանրապետությանը, Աֆղանստանի Դեմոկրատական Հանրապետությանը։

ՏՓԽ-ի երկրները մեծ ներդրում են կատարում զարգացող երկրներում ազգային կադրերի պատրաստման գործում։ Նրանց օգնությամբ կառուցվել են 120 ուսումնական կենտրոններ, 60 բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններ, որտեղ սովորել է 300 հազար մարդ։ Այժմ ՏՓԽ-ի բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում մոտ 100 զարգացող երկրներից սովորում են 41 հազար ուսանողներ, ասպիրանտներ ու ստաժավորվողներ։ Այդ երկրներից մոտ 4 հազար երիտասարդներ ամեն տարի արտադրատեխնիկական ուսուցում են անցնում ՏՓԽ-ի երկրներում։ Սոցիալիստական երկրներում զարգացող 50 երկրներից սովորում են 3 հազար պատանիներ ու աղջիկներ՝ ՏՓԽ-ի ուսումնաթոշակային հատուկ ֆոնդի հաշվին։

Հաջողությամբ են զարգանում ՏՓԽ-ի երկրների առևտրատնտեսական և գիտատեխնիկական հարաբերությունները Իրաքի և Մեքսիկայի հետ՝ 1975 թ. ՏՓԽ-ի և այդ երկու երկրների միջև կնքված համագործակցության համաձայնագրերի հիման վրա։ Ստեղծված են այդ երկրների և ՏՓԽ-ի համագործակցության համատեղ (խառը) հանձնաժողովներ։ ՏՓԽ-ի համաձայնագրերը Իրաքի և Մեքսիկայի հետ նոր երևույթ են զարգացող երկրների հետ ՏՓԽ-ի միջազգային տրնտեսական հարաբերությունների պրակտիկայում։ Այստեղ երկկողմ տնտեսական կապերը օրգանապես լրացվում և հարստացվում են բազմակողմ համագործակցության իրավական ամուր հիմքի վրա։

Սովետական Միությունը և ՏՓԽ-ի մյուս երկրները, ինչպես և նախկինում, ձգտում են փոխշահավետ կապեր զարգացնել նաև կապիտալիստական երկրների հետ։ Սակայն հարկ է նշել, որ կապիտալիստական մի շարք պետությունների արդի քաղաքականությունը չի նպաստում սոցիալիզմի երկրների հետ նրանց առևտրատնտեսական նորմալ հարաբերությունների զարգացմանը։ Այսպես, ոչ մեր մեղքով, ԱՄՆ-ի հետ առևտուրը կրճատվում է կամ սառեցվում։ Դա ամերիկյան քաղաքականության արդյունքն է, որը նպատակ ունի ուրիշ երկրների հետ առևտրատնտեսական հարաբերություններն օգտագործել քաղաքական նպատակներով, որը հակասում է միջազգային իրավահավասար համագործակցության սկզբունքներին։ Սովետական կողմը, սոցիալիզմի մյուս երկրները, միշտ էլ պատրաստակամություն են հայտնել զարգացնել տնտեսական հարաբերությունները ԱՄՆ-ի և այլ կապիտալիստական պետությունների հետ՝ հավասարության և փոխադարձ շահավետության հիման վրա։ Այդպիսի կապեր, օրինակ, երկար ժամանակ կայուն կերպով պահպանվում են Ֆինլանդիայի, ԳՖՀ-ի, Ֆրանսիայի, Իտալիայի հետ։ Օրինակ, սովետա-ֆինլանդական

փոխադարձ առևտրի ծավալը՝ 1979 թ. կազմեց 3 միլիարդ ռուբլի, հինգ տարում
աճելով երեք անգամ: Տասը տարում (1970—1979 թթ.) ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի առև-
տրի ծավալն աճեց 8 անգամ, հասնելով 4 միլիարդ ռուբլու: Այսօր ԳՖՀ-ն
ՍՍՀՄ-ի խոշորագույն առևտրական պարտնյորն է կապիտալիստական երկրների
մեջ: ՍՍՀՄ-ի հետ համագործակցում են արևմտագերմանական 1500 ֆիրմաներ:
Մի քանի միլիարդ ռուբլու երկարաժամկետ համաձայնագրեր են կնքված
ԳՖՀ-ից ՍՍՀՄ նավթամուղների և գազամուղների համար խողովակներ ու սար-
քավորումներ մատակարարելու և սովետական գազի հանդիպակաց մատա-
կարարման վերաբերյալ: Սովետական պատվերները ԳՖՀ-ում աշխատանքով
ապահովում են 350 հազար մարդու: Ընդհանուր առմամբ ՏՓԽ-ի երկրների հետ
պարտնյորությունը հնարավորություն է տալիս ապահովել կես միլիոն մարդու
զբաղվածությունը, որը էական կարևորություն ունի ԳՖՀ-ի համար՝ երկրում
առկա մասսայական գործազրկության պայմաններում: Կնքված են սովետա-
արևմտագերմանական 130 լիցենզիոն համաձայնագրեր, որոնց հիման վրա
իրականացվում է արդի տեխնոլոգիայի փոխշահավետ փոխանակում: Մոսկվա-
յում գործում են արևմտագերմանական 30 ֆիրմաների ու բանկերի ներկայա-
ցուցչություններ:

Սովետա-ֆրանսիական առևտրի ծավալը վերջին հնգամյակում ավելացել
է երեք անգամ: 1970—1979 թթ. ՍՍՀՄ-ի առևտուրը զարգացած կապիտալիս-
տական երկրների հետ աճել է 5,5 անգամ և 4,5 միլիարդից հասել 25,8 միլիարդ
ռուբլու: Այդ երկրներին այժմ բաժին է ընկնում ՍՍՀՄ-ի արտաքին տնտեսական
շրջանառության 30 տոկոսը: Որոշակի փորձ է կուտակվել կապիտալիստական
երկրների հետ ՍՍՀՄ-ի համագործակցության
հիման վրա: Օգտագործելով համագործակցության ասպարեզում՝ փոխհատուցման
մաները որոշակի արտադրատեսակների այդ ձևը, արևմտյան ֆիր-
մատակարարում են սարքավորումներ, արտադրության նպատակով ՍՍՀՄ-ին
ստանալով (իրենց մատակարարումների նյութեր և տեխնոլոգիա՝ փոխարենը
մի մասը: Փոխհատուցման հատուցման ձևով) այդ արտադրանքի
խոշոր օբյեկտների թիվն հիման վրա ՍՍՀՄ-ում կառուցված և կառուցվող
ների հիմնական մասն անցնում է վեց տասնյակից: Ընդ որում, այդ օբյեկտ-
ճյուղերը՝ ընդգրկում է արդյունաբերության առավել կարևորագույն
ցելյուլոզի-թղթի, քիմիական, նավթաքիմիական, նավթագազային, փայտամշակման,
նացվում են նաև կապիտալիստական քարածխի, սև և գունավոր մետալուրգիայի, սննդի: Իրակա-
թյան այնպիսի նոր ձևեր, ինչպիսիք երկրների հետ ՍՍՀՄ-ի համագործակցու-
և այլ օբյեկտների շինարարությունը են այդ երկրներում արդյունաբերական
թյամբ և ՍՍՀՄ-ում պատրաստված սովետական մասնագետների մասնակցու-
սովետական աջակցությամբ Ֆինլանդիայում սարքավորումների բազայի վրա: Այսպես,
գործարան, ատոմային և ջերմային կառուցվել են մետալուրգիական
էլեկտրակայաններ, գազամուղ:

Վերջին տարիներին կիրառվում է արևմտյան երկրների հետ ՍՍՀՄ-ի մաս-
նակցությունը զարգացող երկրներում կառուցվող օբյեկտների շինարարությա-
նը: Առաջին քայլերը կատարվել են ԳՖՀ-ի, Ֆինլանդիայի, Ճապոնիայի, Շվե-
դիայի ֆիրմաների հետ համատեղ: Սովետական կազմակերպություններն այդ
ֆիրմաների հետ պայմանագրեր են կնքել, որոնցով նախատեսվում են սովե-
տական սարքավորումների մատակարարումներ և սովետական մասնագետների
մասնակցությունը զարգացող երկրներում էներգետիկ, արդյունաբերական,
տրանսպորտային և այլ օբյեկտների շինարարությանը: Այս ամենը փոխադարձ
ապրանքային հոսքի աճի օրինաչափ արդյունք է՝ պայմանավորված աշխա-
տանքի միջազգային բաժանման ընդլայնման և խորացման օբյեկտիվ պրոցե-
սով: Ուստի պատահական չէ, որ ՍՄԿԿ XXVI համագումարի հաստատած՝
ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղություններում
խնդիր է առաջադրված. «Ելնելով սոցիալական տարբեր սիստեմներ ունեցող
պետությունների խաղաղ գոյակցության սկզբունքներից և միջազգային լարվա-
ծության թուլացումն ամրապնդելու անհրաժեշտությունից, առևտրատնտեսա-
կան և գիտատեխնիկական փոխշահավետ հաստատուն կապեր իրականացնել
կապիտալիստական այն զարգացած երկրների հետ, որոնք շահագրգռություն են



հանդես բերում համագործակցելու Սովետական Միության հետ: Շարունակել
վառելիքային, մետալուրգիական, քիմիական արդյունաբերության մեջ և ժողո-
վրդական տնտեսության մյուս ճյուղերում խոշոր մասշտաբի նախագծերի
իրագործման ասպարեզում եղած պայմանավորվածությունների իրականացու-
մը և նոր համաձայնությունների կնքումը: Գտնել այդ երկրների հետ համագոր-
ծակցությունը զարգացնելու այլ ուղիներ»:

Սովետական Միությունը շահագրգռված է այդպիսի համագործակցու-
թյամբ, քանի որ այն նպաստում է արագացնելու բնական ռեսուրսների վերա-
մշակումը (իսկ դա հատկապես կարևոր է դժվար մատչելի շրջանների համար),
ստեղծելու և վերակառուցելու արդյունաբերական առանձին օբյեկտներ, բարե-
լավելու սովետական էքսպորտի կառուցվածքը՝ մասնավորապես արտաքին շու-
կայի պահանջներին համապատասխանող մեքենաշինության արտադրանքի և
այլ պատրաստի իրերի արտադրության և մատակարարումների ավելացմամբ:
Այսպիսով, աշխատանքի միջազգային բաժանման հնարավորություններն օգ-
տագործվում են սովետական ժողովրդական տնտեսության պահանջմունքներն
առավել լրիվ բավարարելու տարբեր սարքավորումներով ու մեխանիզմներով,
ինչպես նաև ազգաբնակչության պահանջմունքները՝ սպառողական ապրանք-
ներով:

ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները կարևոր նշանակություն ունեն
ՍՍՀՄ-ի արտաքին-տնտեսական կապերի հետագա կոմպլեքսային զարգացման
համար, սոցիալիստական համագործակցության երկրների հետ ՍՍՀՄ-ի ին-
տերնացիոնալ փոխգործողության ընդլայնման ու խորացման համար, որը Սո-
վետական Միությանը հնարավորություն է տալիս առավել արդյունավետ և
արագ տեմպերով լուծելու իր սոցիալ-տնտեսական խնդիրները, զարգացնելու
և հարստացնելու սոցիալիստական տնտեսական ինտեգրացիան, ընդլայնելու
միջազգային համագործակցությունը:

Սոցիալիստական համագործակցության երկրները նոր տասնամյակ են
թևակոխել ընդհանուր նպատակին հասնելու համատեղ գործողությունների
հստակ, ռեալիստական ծրագրով: Նրանց ամրապնդվող միասնությունն ու հա-
մախմբվածությունը սոցիալիստական և կոմունիստական շինարարության հե-
տագա հաջողությունների երաշխիքն են:

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ԴԵՐԸ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԳՈՐԾՈՒՄ

**Ա. Ա. ՄԽԻԹԱՐՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու

ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1981—1985 թվականների և մինչև 1990 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղություններում նախատեսվում է հետևողականորեն իրագործել կոմունիստական կուսակցության տնտեսական ստրատեգիան, որի գերագույն նպատակը ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքն է, անհատի համակողմանի զարգացման լավագույն պայմանների ստեղծումը: Այդ վեհ նպատակը հնարավոր է կենսագործել հասարակության հետագա տնտեսական առաջընթացի ապահովմամբ, գիտատեխնիկական պրոգրեսի արագացմամբ, էկոնոմիկայի ինտենսիվացմամբ, հանրային արտադրության արդյունավետության բարձրացմամբ, այդ ամենի նյութատեխնիկական բազայի որակական խոր տեղաշարժերի ապահովմամբ:

Սոցիալական ու տնտեսական խոր վերափոխումների իրականացման գործում առանձնահատուկ դեր է հատկացվում գիտատեխնիկական առաջընթացին: Գիտության ու տեխնիկայի նվաճումների իրագործումը նպաստում է ո՛չ միայն նյութական, այլև հոգևոր արժեքների արտադրության աճին ու ընդլայնմանը: Գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների նյութականացման միջոցով ձեռք բերվող ժամանակի խնայողությունը՝ հասարակական առաջընթացի ինտեգրալ ցուցանիշը, հանգում է ո՛չ միայն հասարակության էկոնոմիկայի ինտենսիվացմանն ու նրա անդամների նյութական բարեկեցությանը: Դա տնտեսված ժամանակի սպառողական բնութագիրն է միայն: Չէ՞ որ Կ. Մարքսն էր դեռ նշել, որ ժամանակի տնտեսումով պայմանավորված է ո՛չ միայն սպառման աստիճանը, այլև ինչպես առանձին անհատի, այնպես էլ ողջ հասարակության զարգացման ու գործունեության համակողմանիությունը: Ընդ որում անհատի զարգացման համակողմանիությունը պայմանավորված է ազատ ժամանակով, որի ծավալն աճելու է արտադրության մեջ գիտատեխնիկական նորույթների արմատավորմամբ առաջացած աշխատաժամանակի տնտեսմանը զուգընթաց:

Այսպիսով, գիտատեխնիկական առաջընթացը, միջնորդավորված ժամանակի տնտեսման միջոցով, խթանում է տնտեսական ու սոցիալական առաջընթացը: Սակայն մի բան է գիտատեխնիկական առաջընթացի պոտենցիալ հնարավորությունները և այլ բան՝ նրա նվաճումների իրագործման սոցիալ-տնտեսական ռեալ հետևանքները: Գործնականորեն դա որոշվում է այն հասարակարգի էությամբ, որի պայմաններում տեղի է ունենում այդ երևույթը:

Եթե սոցիալիզմի պայմաններում տնտեսական և սոցիալական առաջընթացները տեղի են ունենում անարգել և ներդաշնակ զուգակցությամբ, ապա կապիտալիզմի պայմաններում հասարակական առաջընթացը ընդհանուր առմամբ անտագոնիստական է: Այդ հակամարտությունը ժամանակին համոզիչ կերպով բացահայտել է Կ. Մարքսը, «... մեքենան ինքնին կրճատում է աշխատաժամանակը, մինչդեռ դրա կապիտալիստական կիրառումը երկարացնում է աշխատանքային օրը... այն ինքնին հեշտացնում է աշխատանքը, իսկ դրա կապիտալիստական կիրառումը բարձրացնում է աշխատանքի ինտենսիվությունը...



ինքնին այն նշանավորում է մարդու հաղթանակը բնության ուժերի նկատմամբ, իսկ դրա կապիտալիստական կիրառումը ստրկացնում է մարդուն բնության ուժերի կողմից... այն ինքնին ավելացնում է արտադրողի հարստությունը, իսկ կապիտալիստական կիրառմամբ նրան դարձնում է պաուպեր և այլն» (К. Маркс и Ф. Энгельс, Соч; т. 23, стр. 451—452):

Ուստի հասարակական առաջընթացի տարրերի ներդաշնակությունն ու փոխպայմանավորվածությունը կարող են ապահովվել միայն այն պայմաններում, երբ արտադրության բարձր մակարդակը, ժամանակի տնտեսման բարձր աստիճանը զուգակցվում են հասարակության և անհատի համակողմանի զարգացման հետ: Իսկ դա հնարավոր է, երբ արտադրվող նյութական ու հոգևոր արժեքները դառնում են հասարակության առանց բացառության բոլոր անդամների սեփականությունը: Այդ բանին կարելի է հասնել արտադրամիջոցների հանրային սեփականության և իրենց աշխատանքի արդյունքներով աշխատավորների զանգվածային շահագրգռվածության պայմանով միայն:

Եվ պատահական չէ, որ ժամանակի տնտեսումը առաջին տնտեսական օրենքի աստիճանին բարձրացնելիս Կ. Մարքսը ժամանակի խնայողության մասին դատողությունները՝ որպես սոցիալական առաջընթացի չափանիշի, հարաբերակցում էր կոլեկտիվ արտադրության հետ, որը հատուկ է սոցիալիստական և կոմունիստական հասարակարգերին:

Այո՛, հենց պրոգրեսիվ հասարակարգում է հնարավոր արտադրողի հաստատումն արտադրապրոցեսում, քանի որ ժամանակի տնտեսման օրենքի սոցիալիստական ասպեկտը միայն սոցիալիզմի պայմաններում է լրիվ համընկնում հանրային արտադրության արդյունավետության անարգել բարձրացման և այդ հիման վրա՝ հասարակության առանց բացառության բոլոր անդամների նյութական և հոգևոր մակարդակի անշեղ բարձրացման նպատակի հետ: Կապիտալիզմի օրոք, ինչպես նշում էր Լենինը, ամեն ինչ արվում է վերնախավերի համար և հոգ չի տարվում ստորին խավերի մասին: Սակայն դա ամենևին գիտության ձեռք բերված մակարդակի և կիրառվող տեխնիկայի ու տեխնոլոգիայի պրոգրեսիվության աստիճանի արդյունքը չէ, այլ առաջին հերթին պայմանավորված է արտադրահարաբերությունների բնույթով որոշվող սոցիալական պայմաններով, որոնք դրսևորվում են իբրև գիտատեխնիկական առաջընթացի գլխավոր շարժիչ ուժ: Գիտության ու տեխնիկայի նվաճումներից մեծ մասի իրագործման պրոցեսների արմատական տարբերությունը սոցիալիզմի և կապիտալիզմի պայմաններում նրանց բուն սոցիալական բովանդակության մեջ է:

Արտադրության կապիտալիստական եղանակի դեպքում, որի անմիջական նպատակն ու շարժիչ լծակը առավելագույն շահույթի ստացումն է, արտադրության նորագույն և տեխնիկական տեսակետից պրոգրեսիվ միջոցները, ըստ Կ. Մարքսի, դառնում են «ուրիշի աշխատանքի արտածծման միջոցներ», հարուցելով շահագործման նոր ձևեր, որոնք հիմնվում են աշխատավորների ֆիզիկական ու մտավոր ուժի գիշատիչ օգտագործման, նյարդահոգեկան ծանրաբեռնվածությունների ավելացման վրա, որոնք ավելի են սրում հակասությունն աշխատանքի ու կապիտալի միջև:

Կապիտալիզմի պայմաններում մարդու և տեխնիկայի միջև գոյություն ունեցող սոցիալական հակասությունները դիպուկ բնութագրել է Կ. Մարքսը: Նա գրել է. «ո՛չ թե բանվորն է օգտագործում արտադրամիջոցները, այլ արտադրամիջոցներն են օգտագործում բանվորին» (К. Маркс и Ф. Энгельс, Соч; т. 23, стр. 320):

Արդի պայմաններում այդ պրոցեսն ավելի է սաստկացել և ունի հետագա սրման անշեղ միտում: Դա առաջացել է այն բանի հետևանքով, որ գիտատեխնիկական առաջընթացի աստիճանը, տեմպերն ու ուղղությունները անմիջական ֆունկցիոնալ կախման մեջ են տվյալ հասարակության մեջ իրականացվող շահերի կառուցվածքից: Արտադրամիջոցների մասնավոր սեփականության պայմաններում կապիտալիստներին հետաքրքրում է կենդանի աշխատանքի այնպի-

տեխնիկության և բազմակողմանիության մակարդակը, նրա կուլտուրական
զարգացման գեղագիտական և էթիկական կողմերը, ազատ ժամանակի օգտա-
գործման ձևերը և այլն, այսինքն՝ բուն մարդը դարձել է կառավարման օբյեկտ։
«Մարդ-գիտություն-տեխնիկա-արտադրություն» համակարգում և գլխա-
վորապես մարդու և տեխնիկայի միջև մարդու դերի ավելի ու ավելի կարևոր-
ման համեմատ, որն առաջացել է գիտատեխնիկական հեղափոխության ծավալ-
ման տեմպերի արագացմամբ, անհատների նպատակամղված կառավարումը
չի կարող կատարվել գիտության ու տեխնիկայի առաջընթացի հետ անմիջական
կապից դուրս։ Դա նույնպես թելադրվում է մարդու վրա ժամանակակից գիտա-
տեխնիկական հեղափոխության բնատեխնիկական բացասական հետևանքների
պլանաչափ կարգավորման անհրաժեշտությամբ։
Այդ կապակցությամբ նպատակահարմար է պլանաչափորեն կառավարել
հասարակության արտադրաուժերի ամբողջությունը կոմպլեքսում՝ «մարդ-գի-
տություն-տեխնիկա-արտադրություն» ամբողջական համակարգը։ Այդպիսի մո-
տեցման իրականացումն ավելի մեծ չափով պայմաններ կստեղծի գիտատեխնի-
կական առաջընթացի սոցիալ-տնտեսական հետևանքների նպատակամղված
կառավարման, դրանով իսկ հասարակական առաջընթացի հասնելու պրոցեսի
արագացման համար։
Հասարակական առաջընթացի պլանաչափ կառավարումը պահանջում է
համապատասխան տեխնիկայի առկայություն։ Այսօր արդեն չի կարելի բավա-
րարվել կենսագործվող միջոցառումների տնտեսական արդյունքների գնահա-
տականով միայն։ Հարկ է հաշվի առնել նաև այդ միջոցառումների սոցիալա-
կան առումը։
Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմանը զուգընթաց սոցիա-
լիստական հասարակարգն ավելի շատ նախապատվություն է տալիս նոր տեխ-
նիկայի սոցիալական արդյունքին։ Չի կարելի մոռանալ, որ սոցիալիստական
հասարակությունը երբեք էլ անտարբեր չի եղել այն բանի նկատմամբ, թե ինչ-
պես են ձեռք բերվում վերջնական արդյունքները։ Զարգացած սոցիալիզմի պայ-
մաններում պահանջվող ծախսումների հետ արդյունքների չափակցելու լավա-
գույն չափանիշ կարող է լինել գիտատեխնիկական առաջընթացի ամբողջական
սոցիալ-տնտեսական արդյունքը։
Սոցիալիստական հասարակության կողմից պլանաչափորեն կառա-
վարվող գիտատեխնիկական առաջընթացը արագացրել է հասարակական
առաջընթացը։ Բավական է ասել, որ սովետական իշխանության գոյու-
թյան 63 տարիներին աշխատավորների ազատ ժամանակն աճել է 2,25 անգամ։
Ազատ ժամանակի ավելացմանը զուգընթաց մարդը լրացուցիչ հնարավորու-
թյուններ է ստանում իր ստեղծագործական ունակությունների զարգացման և
ինքնադրսևորման, այսինքն՝ իր հոգևոր բարիքների արտադրության համար,
որը ներազդում է հասարակության տնտեսական և սոցիալական առաջընթացի
վրա։ Ուստի ազատ ժամանակի «արտադրությունը» կարելի է դիտել որպես հիմ-
նական կապիտալի արտադրություն, ընդ որում, ըստ Կ. Մարքսի, այդ հիմնա-
կան կապիտալը ինքը՝ մարդն է։ Ահա ինչու ազատ ժամանակը ևս նոր հասա-
րակարգի հարստության ու հասարակական առաջընթացի չափանիշ է։
Այսպիսով, սոցիալիստական հասարակարգը կապիտալիզմին հակադրում է
գիտատեխնիկական հեղափոխության հասումների օգտագործման սկզբունքո-
րեն այլ ձև։ Սոցիալիզմը ո՛չ միայն անհամեմատ ավելի լայն հեռանկարներ է
բացում ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության անարգել ծավալ-
ման համար, այլև միաժամանակ նպաստում է նրա դինամիկ ինտենսիվ զար-
գացմանը։

---

# ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅԱՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՍԿԶԲՈՒՆՔԻ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐՈՒՄ

Վ. Հ. ԲԱՂԴԱԳՅՈՒԼՅԱՆ
Պատմական գիտությունների
թեկնածու, դոցենտ

ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ՏԱՐԲԵՐ ՍԻՍՏԵՄ ունեցող պետությունների
խաղաղ գոյակցության սկզբունքը և դրա անշեղ իրակա-
նացումը զարգացման արդի փուլում ունի վճռական ու բախտորոշ նշանակու-
թյուն աշխարհի ժողովուրդների կյանքում։ Խաղաղ գոյակցության լենինյան
սկզբունքը մարքս-լենինյան ուսմունքի կարևորագույն դրույթներից է, որը սեր-
տորեն առնչվում է մեկ երկրում սոցիալիստական հեղափոխության հաղթա-
նակի, սոցիալիզմի կառուցման, համաշխարհային սոցիալիստական համագոր-
ծակցության հետագա զարգացման ու ամրապնդման խնդրի հետ։ Որպես միջազ-
գային քաղաքականության կարևորագույն սկզբունք, այն բխում է ամենից առաջ
սոցիալիստական հասարակարգի էությունից և արտահայտում է աշխարհի
խաղաղասեր ժողովուրդների շահերը։ Խաղաղ գոյակցությունը դասակարգային
պայքարի յուրատեսակ ձև է, որի գիտական հիմնավորումը տրված է տակավին
Վ. Ի. Լենինի նախահոկտեմբերյան մի շարք աշխատություններում։
Հանրահայտ է, որ գիտական կոմունիզմի հիմնադիրներ Կ. Մարքսն ու
Ֆ. Էնգելսը սոցիալիստական հեղափոխության հաղթանակը հնարավոր էին հա-
մարում կամ ամբողջ աշխարհում, կամ մի շարք զարգացած կապիտալիստական
երկրներում միաժամանակ։ Նրանք այլ հետևության չէին կարող հանգել, որով-
հետև այն ժամանակաշրջանում, հասարակական զարգացման նախաիմպերիա-
լիստական փուլում կապիտալիզմը և՛ խորությամբ, և՛ լայնությամբ ծավալվում
էր գրեթե հավասարաչափ։
Վ. Ի. Լենինը զարգացրեց պրոլետարական հեղափոխության մարքսիստա-
կան տեսությունը պատմական նոր պայմաններում, կապիտալիզմի բարձրա-
գույն ստադիայի՝ իմպերիալիզմի դարաշրջանում։ Շարունակելով կապիտալիս-
տական հասարակարգի գիտական ուսումնասիրման, կապիտալիզմի ներքին
օրինաչափությունների ըստ ամենայնի բացահայտման մարքսիստական հեղա-
փոխական ավանդույթները, Լենինը մի շարք աշխատություններում, մասնա-
վորապես Կապիտալիզմը գյուղատնտեսության մեջ, Կապիտալիզմի զարգացու-
մը Ռուսաստանում, Իմպերիալիզմը որպես կապիտալիզմի բարձրագույն ստա-
դիա, Իմպերիալիզմը և սոցիալիզմի պառակտումը և այլ աշխատություններում,
համգամանորեն լուսաբանեց մոնոպոլիստական կապիտալիզմի էական կող-
մերը և այն բնութագրեց որպես «մեռնող», «նեխող», «պարազիտային» կապի-
տալիզմ, որպես պրոլետարական հեղափոխության նախօրյակ։
Իմպերիալիզմի խորազնին ուսումնասիրության ընթացքում Լենինը հանգեց
մի այնպիսի հետևության, որը բախտորոշ նշանակություն ունեցավ ողջ մարդ-
կության, առավելապես Ռուսաստանի ժողովուրդների հետագա ճակատագրի
համար։ Նա բացահայտեց իմպերիալիզմի դարաշրջանում կապիտալիզմի ան-
համաչափ զարգացման օրենքը և այդ հիման վրա բացահայտեց մեկ երկրում
սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և սոցիալիզմի կառուցման
հնարավորությունը։ Լենինն այդ նոր տեսակետը առաջին անգամ շարադրեց

# ԱՄՈՒՐ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆ ԲՈԼՈՐ ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

Մ. Ս. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ
ՀԿԿ Եղեգնաձորի շրջկոմի
առաջին քարտուղար

ԽԱՉԻԿԻ ՊԵՏԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ երկու տարի առաջ ետ էր մնում. չէր կատարում պլանային առաջադրանքները, տնտեսական տարին փակում էր վնասով: Ուսումնասիրությունից պարզվեց, որ ետ մնալու գլխավոր պատճառը կադրերի, մասնավորապես միջին օղակի կադրերի, անբավարար աշխատանքն է, կուսակցական ու կատարողական կարգապահության ցածր մակարդակը: „Արտադրական ճյուղերի ղեկավարներն անհրաժեշտ պատասխանատվությամբ չէին վերաբերվում իրենց վստահված գործին, միջոցներ չէին ձեռնարկում առկա հնարավորություններն ու ռեզերվները լրիվին օգտագործելու համար: Սկզբնական կուսկազմակերպությունը վատ էր կատարում ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իր ֆունկցիան: Աշխատանքի կազմակերպման, կարգապահության ամրապնդման, կադրերի պատասխանատվության բարձրացման հարցերը վրիպել էին նրա տեսադաշտից:

Բացահայտված այդ բոլոր թերությունների շուրջ լուրջ խոսակցություն ծավալվեց կուսշրջկոմի բյուրոյի նիստում: Բյուրոն մշակեց տնտեսությունում գործերի վիճակի բարելավման, սկզբնական կուսկազմակերպության գործունեության աշխուժացման ծավալուն միջոցառումներ: Բյուրոյի որոշումը լայնորեն քննարկվեց սովխոզի սկզբնական կուսկազմակերպության ժողովում, կոմունիստները հանգամանորեն ծանոթացան մեր մշակած միջոցառումներին և գոհունակությամբ ընդունեցին դրանք: Կուսբյուրոն և դիրեկցիան գործնական միջոցներ ձեռնարկեցին դրությունը շտկելու համար: Նրանք առաջին հերթին, ինչպես պահանջվում էր շրջկոմի բյուրոյի որոշմամբ, բարձրացրին արտադրական օղակների ղեկավարների անձնական պատասխանատվությունը գործերի վիճակի համար: Ամենուրեք ստեղծվեց բարոյահոգեբանական նպաստավոր մթնոլորտ: Ճյուղերի ղեկավարները վերջ տվեցին գործի նկատմամբ անտարբեր վերաբերմունքին, սկսեցին հաճախակի լինել տեղերում, պահանջկոտություն ցուցաբերել ինչպես կոլեկտիվի անդամների, այնպես էլ իրենց նկատմամբ: Այժմ էլ նրանք ամեն օր ստուգում են աշխատանքի արդյունքները, հետևում հանձնարարությունների կատարմանը: Եվ, որպես այդ ամենի արդյունք, ֆերմաներում կրճատվեցին անարտադրողական ծախսերը, չնախատեսված ելքերը, բարձրացավ անասնապահների պատասխանատվությունը կերի ռացիոնալ օգտագործման, մթերատվության բարձրացման համար:

Իր գործունեությունն արմատապես վերակառուցեց նաև սկզբնական կուսկազմակերպությունը: Կուսբյուրոն քիչ ջանքեր չգործադրեց իր նիստերի ու կուսժողովների մակարդակը բարձրացնելու, ընդունված որոշումների ներգործությունն ապահովելու համար: Արտադրությանն առնչվող կենսական հարցերն ամենուրեք առաջին պլան մղվեցին: Կազմակերպական աշխատանքի բարելավման հետ միասին, կուսբյուրոն աշխուժացրեց նաև արտադրության մարդկանց շրջանում տարվող գաղափարադաստիարակչական աշխատանքը, արմատապես վերակառուցեց սոցիալիստական մրցության կազմակերպումը, բարձրացրեց դրա արդյունավետությունը, ուժեղացրեց ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողությունը, դիրեկցիայի ու արհկոմի հետ միասին կարգավորեց աշխատավորների նյութական ու բարոյական խրախուսման գործը: Այլ խոսքով, կուսակցական-կազմակերպական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքն ուղղվեց բոլոր օղակներում կարգապահության ամրապնդման նպատակին:

Եվ պատահական չէ, որ Խաչիկի պետական տնտեսությունը բռնեց վերելքի ուղին և այժմ քայլում է մրցության առաջավորների շարքում: Այստեղ, նախորդ տարիների համեմատությամբ, նկատելիորեն բարձրացել է կովերի միջին կաթնատվությունը, ավելացել կաթի համախառն արտադրությունը: Մատղաշների ինտենսիվ աճեցման շնորհիվ դրանք մթերակայան են հանձնվում բարձր կենդանի քաշով, վաճառված անասուններն ընդունվում են միջակ և միջակից բարձր գիրությամբ միայն: Պայմաններ են ստեղծվել հանրային հոտի անկորուստ պահպանման և մթերատվության բարձրացման համար. կուտակվում է բավարար քանակությամբ կեր՝ խոտ, սիլոս, սենաժ և այլն: Պետությանը պլանից ավելի վաճառվել են մեծ քանակությամբ հացահատիկ, պտուղ, բանջարեղեն: Մթերքների իրացումից տնտեսության եկամուտները վերջին երկու տարում աճել են 120 հազար ռուբլով:

Տնտեսության հաջողությունները շարունակում են բազմապատկվել: Կուսկազմակերպությունը և դիրեկցիան հստակորեն որոշել են տասնմեկերորդ հնգամյակի տնտեսական և սոցիալական խնդիրները և ամեն ինչ անում են դրանք պատվով լուծելու համար: Վկայությունը առաջին կիսամյակի արդյունքներն են: Կաթի արտադրության պլանը կատարվել է 112 տոկոսով, մսինը՝ 102, ձվինը՝ 124 տոկոսով, նախորդ տարվա համեմատությամբ աճել են ինչպես մթերքների համախառն արտադրությունը, այնպես էլ անասունների մթերատվությունը: Այդ հաջողությունների ապահովման գործում մեծ դեր են խաղացել բոլոր օղակներում կարգապահության բոլոր ամենայնի ամրապնդումը, մասնագետների ու ղեկավար կադրերի, բոլոր աշխատողների պատասխանատվության բարձրացումը:

Գաղտնիք չէ, որ զարգացած սոցիալիզմի, գիտատեխնիկական հեղափոխության արդի պայմաններում, երբ պահանջվում է կոմպլեքսային ու գիտական մոտեցում ցույց տալ ժողովրդատնտեսական խնդիրների լուծմանը, կուսակցական ու պետական, աշխատանքային ու կատարողական կարգապահության դերն ավելի է մեծանում: Եվ օրինաչափ է, որ ժողովրդական տնտեսության մեջ աշխատանքային կարգապահության հետագա ամրապնդման ու կադրերի հոսունության կրճատման մասին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԿԽ-ի 1980 թ. հունվարի որոշմամբ կարգապահության ամրապնդման նպատակով տարվող աշխատանքը դիտվում է որպես կուսակցության տնտեսական ու սոցիալական քաղաքականության կենսագործման, արտադրության արդյունավետության բարձրացման, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի գլխավոր ուղղություններից մեկը:

ՍՄԿԿ XXVI համագումարը բոլոր ամենայնի կարևորեց կարգապահության դերը տասնմեկերորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական խնդիրները լուծելու, նյութական ու աշխատանքային ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու, աշխատավորական կայուն կոլեկտիվներ ձևավորելու գործում: Կարգապահության ամրապնդման վերաբերյալ համագումարի պահանջների առումով ուշագրավ փորձ է կուտակված Աղավնաձորի պետական տնտեսությունում: Այստեղ հաստատված աշխատանքային առողջ մթնոլորտը մեծապես նպաստում է աշխա-

տանքի գիտական կազմակերպմանը, կադրերի ճիշտ ընտրությանն ու դաստիա-
րակությանը, պետական պլանների ու սոցիալիստական պարտավորություննե-
րի կատարմանը:
Հաշվի առնելով, որ կուսակցական և պետական կարգապահության ամ-
րապնդման գործում վճռական նշանակություն ունի կադրային ճիշտ քաղաքա-
կանությունը, տնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը և դիրեկ-
ցիան, առաջին հերթին, հոգ են տանում կադրերի, մասնավորապես միջին օղա-
կի կադրերի ընտրության ու դաստիարակության, գործի նկատմամբ նրանց
պատասխանատվության, իրենց ու ենթակաների հանդեպ պահանջկոտության
բարձրացման մասին: Այստեղ կադրերն ընտրում են ըստ նրանց գործնական
ու քաղաքական հատկանիշների, ուշադրության կենտրոնում պահում նրանց
որակական աճը: Փորձառու ղեկավարների կողքին կան ակտիվ, նորի զգացու-
մով օժտված երիտասարդներ, որոնք հաջողությամբ լրացնում են միմյանց:
Արդեն երկու տասնամյակից ավելի է, ինչ կաթնապրանքային ֆերման
ղեկավարում է կոմունիստ Ստեփան Ալավերդյանը: Կարգապահ է, խստապա-
հանջ: Անհարգելի բացակայությունը, ուշացումը խորթ երևույթներ են կոլեկ-
տիվի անդամների համար: Մարդկանց աշխատանքը չափվում է կոնկրետ ար-
դյունքով: Տասներորդ հնգամյակի տարիներին ֆերմայում կովերի միջին կաթ-
նատվությունն աճել է 1220 կիլոգրամով և հատել 3500-ի սահմանագիծը: Դա
ռեկորդային ցուցանիշ է մեր շրջանի պայմաններում: Իսկ առաջավոր կթվո-
րուհիներ, ՀՍՍՀ Գերագույն սովետի դեպուտատ Ռոզա Համբարձումյանը, Աշ-
խատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Երջանիկ Հակոբջանյանը, Կինուշ
Գրիգորյանը և շատ ուրիշներ 1980 թ. ամեն մի կովից ստացան 4000 կգ կաթ:
Ի դեպ, 1975 թ. շրջանում մեկ կովից 2000 կգ կաթ ստացող ընդամենը երկու
կթվորուհի ունեինք, ապա 1980 թ. կթվոր-երեքհազարականների հանրապետա-
կան ակումբում եղեգնաձորցիների թիվը հասավ 40-ի, որից 15-ը աղավնաձոր-
ցիներ են: Աղավնաձորի ֆերմայում նկատելիորեն բարձրացել է անասնապա-
հության վարման կուլտուրան, մեքենայացվել են աշխատատար բոլոր պրո-
ցեսները, խստորեն կիրառվում է օրվա աշխատակարգը: Եվ այդ հաջողություն-
ների մեջ իր արժանի բաժինն ունի ֆերմայի վարիչը:
Դրվատանքով կարելի է խոսել այգեգործական բրիգադի բրիգադավար,
Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Վահագն Գրիգորյանի և «Պատ-
վո նշան» շքանշանակիր Օնիկ Իսրայելյանի մասին, որոնք աչքի են ընկնում
գործիմացությամբ, հետևողականությամբ: Նրանց ղեկավարած կոլեկտիվները
նախորդ հնգամյակում զգալիորեն բարձրացրել են խաղողի այգիների բերքա-
տվությունը:
Հոգատարությամբ են շրջապատվում երիտասարդ, ձեռներեց կադրերը:
Թեև ընդամենը 5 տարվա աշխատանքի փորձ ունի երիտասարդ բրիգադավար
Արամայիս Հայկոյանը, սակայն ոչ մի բանով ետ չի մնում ավագ ընկերներից:
Նրա ղեկավարած բրիգադի խաղողի այգիներից ևս ստացվում է բարձր բերք:
Իրենց կատարած գործի կարևորության խոր ըմբռնմամբ է Աղավնաձո-
րում աշխատում յուրաքանչյուր ոք: Տնտեսության առջև ծառացած խնդիրներն
ամեն մի աշխատողի հասցնելու նպատակին են ի սպաս դրվում, մասնավո-
րապես, բրիգադներում և ֆերմաներում ամիսը մեկ, իսկ տնտեսությունում՝
եռամսյակը մեկ անցկացվող արտադրական խորհրդակցությունները, որտեղ
հանրագումարի են բերվում սոցմրցության արդյունքները, նյութապես ու բարո-
յապես խրախուսվում առաջավորները: Այստեղ, իրոք, լավ հերթափոխ է աճում:
Միջնակարգ դպրոցի բարձր դասարանցիներն ուսումնասիրում են գյուղատն-
տեսական մեքենաները: Դա նպաստում է պատանիների մասնագիտական կողմ-
նորոշմանն ու աշխատանքային դաստիարակությանը: Դպրոցի շատ շրջանա-
վարտներ այս տարի համալրել են տնտեսության մեխանիզատորների շարքերը:
Այգեգործական յուրաքանչյուր բրիգադում գործում է կոմերիտական-երիտա-
սարդական մեքենայացված օղակ և այլն: Կուսկազմակերպությունը (քարտու-
ղար՝ Ն. Այվազյան) և դիրեկցիան (դիրեկտոր՝ Վ. Մաթևոսյան) միշտ իրենց
տեսադաշտում են պահում աշխատավորների դաստիարակության, նրանց քա-
ղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացման հարցերը:



Խաչիկի և Աղավնաձորի պետտնտեսությունների կուսկազմակերպությունների օրինակն ինքնին վկայությունն է այն բանի, որ կադրային ճիշտ քաղաքականությունը աշխատանքային ամուր կարգապահության հաստատման, տնտեսական ու սոցիալական խնդիրների հաջող լուծման գրավականն է: Մենք առաջնահերթ խնդիր ենք համարում տնտեսությունների ղեկավարների և կուսկազմակերպությունների քարտուղարների ճիշտ ընտրությունն ու նրանց արդյունավետ համագործակցության ապահովումը: Եվ եթե շատ տնտեսություններում օրինակելի կարգ ու կանոն է հաստատված, ամուր է կուսակցական, պետական, աշխատանքային ու կատարողական կարգապահությունը, ապա դա ձեռք է բերվել, ամենից առաջ, կադրերի ճիշտ ընտրության, նրանց պատասխանատվության բարձրացման շնորհիվ:

Այսօր Խաչիկի, Գլաձորի, Ագարակաձորի, Եղեգնաձորի, Աղավնաձորի, Արփիի, Մալիշկայի և այլ տնտեսություններ գտնվում են հուսալի ձեռքերում: Շրջանի տնտեսությունների ղեկավարները հիմնականում բարձրագույն կրթությամբ մասնագետներ են: Բարելավվել է նաև միջին օղակի կադրերի որակական կազմը, բոլոր տնտեսություններն ապահովված են բարձրագույն կրթությամբ գլխավոր մասնագետներով: Գործնական քայլեր ենք արել սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների որակական կազմի բարելավման ասպարեզում. 77 քարտուղարներից 47-ն ունի բարձրագույն, մնացածը՝ միջնակարգ և միջնակարգ-մասնագիտական կրթություն: Նրանց թվում մեծ տոկոս են կազմում գյուղատնտեսության և արդյունաբերության մասնագետները:

ՍՄԿԿ XXVI համագումարն անհրաժեշտ համարեց մշակել աշխատանքի այնպիսի ոճ, որի մեջ կատարողականությունը, կարգապահությունը օրգանապես զուգակցվեն համարձակ նախաձեռնության և ձեռներեցության հետ, գործիմացությունն ու գործարարությունը՝ մեծ նպատակների ձգտման հետ: Այս պահանջների ոգով են իրենց աշխատանքը կազմակերպում շատ տնտեսությունների դիրեկտորներ և քարտուղարներ՝ Հ. Բաղդասարյանն ու Ռ. Խաչատրյանը (Եղեգնաձոր), Ռ. Սաստրյանն ու Ս. Մարտիրոսյանը (Ագարակաձոր), Ղ. Բաբայանն ու Ս. Ղուլիջանյանը (Արփի), Ջ. Մամեդովն ու Մ. Մամեդովը (Ղավուշուղ) և ուրիշներ:

Կուսակցությունը սովորեցնում է վստահել կադրերին, բայց միաժամանակ ստուգել, թե նրանք ինչպես են կատարում իրենց պարտականությունները, կենսագործում կուսակցության և կառավարության դիրեկտիվներն ու որոշումները: Ղեկավար և միջին օղակի կադրերի պատասխանատվության բարձրացման, ամենուրեք կարգապահության ամրապնդման նպատակով կուսշրջկոմը կիրառում է զանազան ձևեր ու միջոցներ, անընդհատ կատարելագործում կադրերի հետ տարվող աշխատանքը:

Օրինակ, սահմանել ենք այսպիսի կարգ: Կազմբաժնի վարիչի կամ հրահանգիչներից մեկի գլխավորությամբ բաժնի արտահաստիքային աշխատողներից և մասնագետներից կազմում ենք հանձնաժողով, որը տեղերում ուսումնասիրում է գործերի վիճակը ըստ առանձին տեղամասերի, կուսակցական, պետական, աշխատանքային և կատարողական կարգապահության դրվածքը: Նա պարզում է, թե այդ տեղամասերի ղեկավարներն ինչպես են գլխավորում աշխատանքը, մոբիլիզացնում մարդկանց ուժերը, արտադրության զարգացման հնարավորություններն ու ռեզերվները՝ տնտեսական և սոցիալական խնդիրները հաջողությամբ լուծելու համար: Ընդ որում այդ գործին մշտապես հետևում է կուսշրջկոմի համապատասխան քարտուղարը: Դրանով մի կողմից բարձրացնում ենք բաժնի, հրահանգիչների դերը, մյուս կողմից՝ կադրերի պատասխանատվությունը: Ղեկավար և միջին օղակի կադրերն զգաստանում են, ձգտում են ավելի բանիմացորեն ղեկավարել իրենց վստահված տեղամասերը, պահանջկոտություն են հանդես բերում ոչ միայն ենթակաների, այլև իրենց իսկ նկատմամբ:

Մենք օգնում ենք կադրերին, եթե նրանց ղեկավարած տեղամասերում գործերը անհաջող են ընթանում: Հնարավոր է, որ այդպիսի վիճակ ստեղծվի իրենցից անկախ պատճառներով: Սակայն երբ համոզվում ենք, որ այս կամ այն աշխատողը զուրկ է քաղաքական և կազմակերպչական համապատասխան հատ-

# ԿԻԼՈՎԱՏ-ԺԱՄԻ ԳԻՆԸ

Ս. Գ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ համակարգում ջերմաէներգետիկ կոմպլեքսի դերը մշտապես աճում է, ընդլայնվում են դրա զարգացման մասշտաբները, բարդանում խնդիրները: Երկրի էկոնոմիկայի զարգացման այդ հանգուցային պրոբլեմը ներառում է այնպիսի կարևորագույն հարցեր, ինչպիսիք են ջերմաէներգետիկ հաշվեկշռի կատարելագործումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, էներգիայի նկատմամբ ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջմունքների հուսալի բավարարումը, խնայողության ամբողջ աշխատանքի մակարդակի բարձրացումը:

Հայտնի է, որ էներգետիկան կարևոր տեղ է զբաղեցնում մարդկության առջև ծառացած գլոբալ պրոբլեմների թվում: Ամբողջ աշխարհում մեկ շնչի հաշվով էներգիայի օգտագործումն աճում է արագ տեմպերով: Վերջին երեք տասնամյակում նավթի ծախսումներն ավելացել են երեք և կես անգամ: Դրա հետևանքով նկատելիորեն սպառվում են հեղուկ վառելանյութի համաշխարհային պաշարները: Եթե այժմ աշխարհում էներգիայի տարեկան ծախսումները մոտենում են 10 միլիարդ տոննա պայմանական վառելանյութի, ապա 2000 թ. այդ ցուցանիշը, ըստ մասնագետների կանխատեսումների, կհասնի 18—23 միլիարդի:

Դարասկզբին էներգիայի սպառումը կրկնապատկվում էր 50 տարվա ընթացքում, մեր դարի կեսերին այդ ժամկետը կազմում էր արդեն 30 տարի: Այժմ կրկնապատկումը տեղի է ունենում 15—20 տարում: Իրողություն է, սակայն, որ տեխնոլոգիական պրոցեսների մշտական կատարելագործման շնորհիվ ավելի ու ավելի քիչ էներգիա է ծախսվում մեկ միավոր արտադրանքի հաշվով: Բայց աշխարհի բնակչությունն աճում է արագ տեմպերով. այսօր մեր մոլորակի բնակիչների թիվը 4,5 միլիարդ է, իսկ դարավերջին կհասնի 6—6,5 միլիարդի: Համընդհանուր ինդուստրացումը մեծ չափերով ավելացնում է էներգածախսումները: Գյուղատնտեսության արդյունավետության բարձրացման անհրաժեշտությունը ևս ավելի շատ էներգիա է պահանջում հողերի մշակման, բերքի վերամշակման, հանքային պարարտանյութերի արտադրության համար և այլն: Վերջապես, բնական շատ ռեսուրսներ, որոնք նախկինում հեշտությամբ էին արդյունահանվում՝ դրանց հանքավայրերը երկրի մակերևույթին մոտ գտնվելու շնորհիվ, այժմ սպառվում են: Կենսական անհրաժեշտություն է խորանալ երկրի ընդերքը, ինչպես նաև ծովերի առափնյա շրջանները: Ընդ որում լրացուցիչ էներգածախսեր են պահանջվում առավել աղքատիկ հանքերի շահագործման համար: Այս ամենը հանգեցնում է էներգիայի ծախսումների արագ և անխուսափելի աճի:

Գիտնականների հաշվարկներով էներգառեսուրսների 20 տոկոսը ծախսվում է էլեկտրաէներգիա ստանալու համար, ևս 20 տոկոսը բաժին է ընկնում ավիացիան, ավտոտրանսպորտը, ծովային ու գետային նավատորմը, տրակտորները, դիզելով գործող փոքր էներգաշարժիչները վառելանյութով ապահովելուն, 30 տոկոսը ծախսվում է ջեռուցման, կենցաղային նպատակներով և տեխնոլոգիա-



կան այնպիսի պրոցեսներում, որոնք սպառում են ցածր պոտենցիալի ջերմություն (մինչև 150 աստիճան): Բնական էներգառեսուրսների միայն 30 տոկոսն է ծախսվում արդյունաբերության մեջ՝ մետալուրգիայում, քիմիայում և այլուր՝ բարձր պոտենցիալի ջերմությամբ (500—1500 աստիճան):

Էներգիայի հարաճուն սպառումը կապիտալիզմի օրոք անխուսափելիորեն հանգեցնում է սուր ճգնաժամերի, մինչդեռ տնտեսավարման սոցիալիստական սիստեմը լայն հնարավորություններ է ընձեռում էներգետիկ պրոբլեմները լուծելու գիտական հիմունքներով, կոմպլեքսային եղանակով, պլանաչափորեն:

Մեր երկիրն ունի աշխարհի ամենախոշոր վառելիքաէներգետիկ կոմպլեքսը: Միայն վերջին 15 տարում էլեկտրաէներգիայի արտադրությունը և նավթի արդյունահանումն աճել են երեք, իսկ գազինը՝ ավելի քան չորս անգամ: Ժամանակակից էներգետիկան ավելի ու ավելի մեծ չափով է հենվում գիտության նվաճումների, բարձրարտադրողական տեխնիկայի վրա: Այսօր թողարկվում են ջերմաէլեկտրակայանների էներգոագրեգատներ՝ 800 հազար-ական կիլովատ հզորությամբ, ստեղծվել են մեկ միլիոն կիլովատ հզորությամբ ատոմային ռեակտորի գլխավոր էներգետիկ բլոկի սարքավորումներ, յուրացվել է մեկ միլիոն կիլո- 200 հազար կիլովատ հզորությամբ արտադրությունը: Դա վառելիքի, նյութերի ու աշխատանքի զգալի տնտեսում կտա:

ՍՄԿԿ XXVI համագումարը խնդիր դրեց տասնմեկերորդ հնգամյակի վերջում էլեկտրաէներգիայի արտադրությունը հասցնել 1.550—1.600 միլիարդ կիլովատ-ժամի, որից 220—225 միլիարդը կտան ատոմային էլեկտրակայանները, 230—235 միլիարդը՝ հիդրոէլեկտրակայանները: Ընդ որում ԱԷԿ-ները և ՀԷԿ-երը հիմնականում կկառուցվեն երկրի եվրոպական մասում, իսկ արևելքում կտեղծվեն ածխով և բնական գազով աշխատող հզոր ջերմակայաններ: Ընթացիկ հնգամյակի կարևորագույն խնդիրներից են էքիբաստուզի, Կանսկ-Աչինսկի և Սայանո-Շուշենսկոյեի ջերմաէներգետիկ կոմպլեքսների ստեղծումը:

Մեր երկրին բաժին է ընկնում վառելիքային ռեսուրսների համաշխարհային արտադրության մեկ հինգերորդ մասը: ՍՍՀՄ-ը աշխարհում միակ ինդուստրիալ մեծ տերությունն է, որն իրեն ապահովում է սեփական վառելիքաէներգետիկ ռեսուրսներով:

Երկրի միասնական էներգոսիստեմում իր հզոր էներգետիկ բազան ունի նաև Սովետական Հայաստանը: Այժմ մեր հանրապետության բոլոր էլեկտրակայանների ընդհանուր հզորությունը հասնում է 3,5 միլիոն կիլովատի, որից ջերմային կայաններին բաժին է ընկնում 1 միլիոն 760 հազարը: Հանրապետությունում էլեկտրաէներգիայի տարեկան արտադրությունն անցնում է 13 մլրդ կիլովատ-ժամից: Տասնմեկերորդ հնգամյակում նոր էներգահզորություններ գործարկելու շնորհիվ նախատեսվում է էլեկտրաէներգիայի արտադրությունը հասցնել 14,5 միլիարդ կիլովատ-ժամի:

Երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տասնմեկերորդ հնգամյակի և ութսունական թվականների համար կոմունիստական կուսակցության մշակած լայն ծրագիրը կատարելու համար անհրաժեշտ է արտադրության մեջ ներգրավել հումքային և վառելիքաէներգետիկ հսկայական նյութական ռեսուրսներ: Հայտնի է, սակայն, որ հումքի և վառելիքի հանույթը ավելի ու ավելի թանկ է նստում, իսկ օգտակար հանածոների պաշարներն անվերականգնելի են: Այդ պայմաններում նյութական ռեսուրսների բոլոր տեսակների առավել խնայողական և ռացիոնալ օգտագործումը առանձնահատուկ ժողովրդատնտեսական նշանակություն է ստանում:

Հաշվարկները վկայում են, որ մեկ տոննա պայմանական վառելանյութի խնայողության համար 2—3 անգամ պակաս կապիտալ ներդրումներ են պահանջվում, քան նույն քանակի ջերմաէներգետիկ ռեսուրսների արտադրության ապահովման համար: Եվ միանգամայն օրինաչափորեն էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման ու նրա ինտենսիվացման՝ ՍՄԿԿ XXVI համագումարի կուրսն ուղղված է այն նպատակին, որ արտադրության արդյունքներն ավելի արագ աճեն, քան դրա վրա կատարվող ծախսերը, ավելի պակաս ռեսուրսներով ձեռք բերվեն ավելի մեծ արդյունքներ: Ուստի մեր հետագա առաջընթացը ավելի ու ավելի պայմանավորված կլինի եղած բոլոր ռեսուրսների՝ աշ-

կան կոմբինատի ռացիոնալիզատորներ Ն. Սարգսյանի, Վ. Կարապետյանի,
Ի. Լազարևի, Ռ. Օսյանի, Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի ռա-
ցիոնալիզատորներ Լ. Բալասանյանի, Վ. Սարգսյանի, Գ. Ավագյանի, Երևանի
«Ալմաստ» գործարանից՝ Ս. Պողոսյանի, Արթիկի ապակե տարաների ձեռնար-
կությունից՝ Է. Եգանյանի, Ս. Հովհաննիսյանի, Երևանի «Նաիրիտ» գիտաարտա-
դրական միավորումից՝ Ֆ. Գալստյանի, Ս. Մելիքյանի և ուրիշների առաջար-
կությունների ներդրման շնորհիվ: Ջանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինա-
տի ռացիոնալիզատորների 12 առաջարկություններից ստացվել է 1.391,6 հա-
զար կվտ-ժամ էլեկտրաէներգիայի խնայողություն, Կիրովականի քիմիական
մանրաթելերի գործարանում 9 առաջարկություններից՝ 108 հազար կվտ-ժամ:
«Նաիրիտ» միավորման ռացիոնալիզատորները խնայել են 761,9 հազար կվտ-
ժամ, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատում՝ 11.918,7 հազար կվտ-
ժամ էլեկտրաէներգիա:

Էլեկտրաէներգիան և ջերմաէներգիան տնտեսելու շարժումը ծավալելու
գործում կարևոր նշանակություն ունեն խնայողության համամիութենական
ամենամյա մրցանակաբաշխությունները, որոնց ակտիվորեն մասնակցում են
մեր հանրապետության ռացիոնալիզատորները: Միայն 1980 թ. մրցանակա-
բաշխությանը ներկայացվել էր 84 ռացիոնալիզատորական առաջարկ՝ տարե-
կան 59 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրական և 89,8 հազար հեկակալորիա ջեր-
մային էներգիայի տնտեսման հաշվարկով:

Նախորդ տարիների համեմատությամբ էլեկտրական և ջերմային էներգիան
խնայելու նպատակով ռացիոնալիզատորական շարժումը առանձնապես լայն
ծավալ է ստացել քիմիական, գունավոր մետալուրգիայի, թեթև, տեղական ար-
դյունաբերության ձեռնարկություններում:

Ռացիոնալիզատորական շարժման ծավալումը նպաստում է էներգետիկ-
ների, տեխնոլոգների, գիտության աշխատողների, բանվորների, ինժեներների և
տեխնիկների ներգրավմանը՝ էլեկտրական էներգիայի տնտեսման նպատակով
ստեղծագործական և ռացիոնալիզատորական ակտիվ գործունեության մեջ: Ան-
հրաժեշտ է ամեն կերպ զարգացնել և պաշտպանել աշխատավորների նախա-
ձեռնությունը և խնայողության ուղիների ու մեթոդների ստեղծագործական որո-
նումը, դաստիարակել հոգատար վերաբերմունք ժողովրդական բարիքի նկատ-
մամբ:

Ջերմաէներգետիկ ռեսուրսների խնայողության և արտադրության արդյու-
նավետության բարձրացման կարևոր միջոցներից մեկը արտադրության երկ-
րորդային էներգառեսուրսների օգտագործումն է, արդյունաբերական մնացուկ-
ների և հարակից պրոդուկտների՝ տնտեսական շրջանառության մեջ դնելը: Երկ-
րորդային էներգառեսուրսների ուտիլացումը, էներգիայի զգալի տնտեսման հետ
մեկտեղ, նպաստում է նաև արդյունաբերական վնասակար մնացուկներից շըր-
ջակա միջավայրի պահպանմանը:

Բազմատեսակ են երկրորդային էներգառեսուրսները՝ արտադրանքի մնա-
ցուկների, հարակից և միջանկյալ այն պրոդուկտների էներգետիկ պոտենցիալը,
որոնք առաջանում են տեխնոլոգիական ագրեգատներում ու պրոցեսներում: Այդ
էներգիան չի օգտագործվում տվյալ ագրեգատում, բայց կարելի է մասնակիո-
րեն կամ ամբողջությամբ օգտագործել այլ ագրեգատների ու պրոցեսների էներ-
գամատակարարման համար:

Հանրապետության շատ ձեռնարկություններում պլանաչափ աշխատանք է
կատարվում երկրորդային էներգառեսուրսների օգտագործման նպատակով: Այդ
ասպարեզում որոշակի արդյունքների են հասել պոլիվինիլացետատ, ավտոդո-
դերի, Կիրովականի քիմիական մանրաթելի և այլ գործարաններում: Միայն
կարբամիդի արտադրամասի բանեցրած տաք ջրերի օգտագործման շնորհիվ Կի-
րովականի քիմիական գործարանը ստացել է 600 հազար կիլովատ-ժամ էլեկ-
տրական և 25 հազար հեկակալորիա ջերմային էներգիայի խնայողություն: Սև-
վանի գործադիր սարքերի գործարանում ձուլման արտադրության վառարան-
ներից զատվող ջերմային էներգիայի օգտագործմամբ տաք ջրով ապահովվել
են կենցաղային շենքերը և գործարանի ճաշարանը: Դրա շնորհիվ տնտեսվել է



ջերմային էներգիայի տարեկան ծախսի կեսը և էլեկտրական էներգիայի 2,2
տոկոսը:

Հանրապետության ժողովրդական վերահսկողության կոմիտեի ծանր ար-
դյունաբերության բաժնի և Հայգլխէներգոյի էներգահսկողության ուսումնասի-
րությունների շնորհիվ երկրորդային էներգառեսուրսների մեծ չափերի հասնող
չօգտագործվող ռեզերվներ են հայտնաբերվել «Նաիրիտ» գիտաարտադրական
միավորումում, Արարատի ցեմենտի-շիֆերի, Երևանի կերամիկական իրերի,
Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատներում, մի շարք այլ ձեռնարկու-
թյուններում:

Երկրորդային էներգառեսուրսների օգտագործումը պետական նշանակու-
թյուն ունեցող գործ է և յուրաքանչյուր ձեռնարկության ղեկավարների, մաս-
նագետների, բանվորների պատվի խնդիրը: Միաժամանակ պետք է նկատի ունե-
նալ, որ ձեռնարկությունները հաճախ չունեն այդ ռեսուրսներն օգտագործելու
համար անհրաժեշտ սարքավորումներ: Իհարկե, դրանց մի մասը կարելի է և
պետք է պատրաստել տեղում, սեփական ուժերով: Սակայն ավելի բարդ ապա-
րատներ ու սարքեր ստեղծելու համար անհրաժեշտ է ընդլայնել նախագծային,
տեխնիկատնտեսական, գիտահետազոտական և կոնստրուկտորական համա-
պատասխան աշխատանքները: Այդ նպատակով հրատապ անհրաժեշտություն է
տեխնոլոգների, էներգետիկների, կոնստրուկտորների, հետազոտողների և շա-
հագործողների ջանքերի միավորումը, ինչպես նաև Միության ու արտասահ-
մանյան առաջավոր փորձի ուսումնասիրումն ու օգտագործումը:

Արդեն անհրաժեշտություն է դառնում յուրաքանչյուր ձեռնարկության հա-
մար հիմնական արտադրանքի հետ մեկտեղ երկրորդային էներգառեսուրսների
տնտեսման պլանավորումը, ինչպես նաև այդ ռեսուրսների կոմպլեքսային և
ռացիոնալ օգտագործման հեռանկարային սխեմաների մշակումը:

Խնայողության ռեժիմի ուժեղացման ասպարեզում մեծ ծավալի և կարևոր
աշխատանք է կատարում Հայգլխէներգոյի էներգահսկողության անձնակազմը:
Եթե նախկինում այդ մարմիններն իրականացնում էին միայն վերահսկողու-
թյան ֆունկցիա, ապա այժմ նրանք ձեռնարկություններում ու կազմակերպու-
թյուններում մանրամասն ուսումնասիրում են տեխնոլոգիական պրոցեսները,
վերլուծում խնայողության նպատակով մշակված կազմակերպական-տեխնի-
կական միջոցառումները և տվյալ կոլեկտիվի համապատասխան անձնակազմի
հետ ի հայտ բերում այն ռեզերվներն ու հնարավորությունները, որոնք կարող
են գործի դրվել առանց կապիտալ ներդրումների: Էներգահսկողության անձնա-
կազմը շուրջ 80 խոշոր ձեռնարկությունների աշխատանքը իր տեսադաշտում է
պահում ամեն օր, 250 ձեռնարկություններ ստուգվում են շաբաթը մեկ անգամ:
Էներգիայի օգտագործման ռեժիմների պահպանման վիճակը մշտապես վերա-
հսկվում է շուրջ 22 հազար ձեռնարկություններում:

Հայգլխէներգոյի էներգահսկողությունը ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողու-
թյան կոմիտեի, էներգետիկայի և էլեկտրատեխնիկական արդյունաբերության
գիտատեխնիկական ընկերությունների հանրապետական վարչության, տեխնի-
կայի տան հետ մեկտեղ վերջերս կազմակերպեց էներգիայի արդյունավետ օգ-
տագործման հարցերին նվիրված հանրապետական գիտագործնական կոնֆե-
րանս: Վերջինս ընդունեց կոնկրետ հանձնարարականներ՝ արդյունաբերական և
էներգասպառող մյուս ձեռնարկություններում ու կազմակերպություններում
1981 թ. էներգետիկ ռեսուրսների խնայողության կոմպլեքս միջոցառումներ իրա-
կանացնելու վերաբերյալ:

Փաստ է, սակայն, որ, չնայած ձեռնարկվող միջոցներին, բազմաթիվ օբ-
յեկտներում էլեկտրաէներգիայի ծախսումների լիմիտները խախտվում են:
1980 թ. կարողության լիմիտի գերածախս են ունեցել Չարենցավանի գործի-
քաշինական, Երևանի էլեկտրասարքերի գործարանները և Լենինականի
գործվածքային ֆաբրիկան:

Լիմիտային ռեժիմի խախտումները առանձնապես մեծ չափերի են հաս-
նում հանրապետության թեթև արդյունաբերության մինիստրության սիստեմում:
Այստեղ բացառություն չեն կազմում նաև այնպիսի խոշոր ձեռնարկությունները,
ինչպես «Արագած» բամբակագործվածքային, «Մասիս» կոշիկի, Մյասնիկյանի

ներ են պահանջում։ Սոցիալիստական մրցության կազմակերպման և դրա արդյունքների ամփոփման ժամանակ անհրաժեշտ է ավելի մեծ ուշադրություն նվիրել էներգիայի և վառելիքի խնայողության հարցերին, ավելի ակտիվորեն օգտագործել լավագույն արդյունքների հասած կոլեկտիվների և առանձին աշխատողների բարոյական ու նյութական խրախուսման տարբեր ձևերը։

Պլանային առաջադրանքների կատարման ասպարեզում միավորումների, ձեռնարկությունների, հիմնարկությունների ու կազմակերպությունների գործունեությունը գնահատելիս խիստ կարևոր է ուշադրության առնել էլեկտրաէներգիայի և մյուս նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման պետական և հանրային ունեցվածքի պահպանման գործում ձեռք բերված արդյունքները։ Վերջին տարիներին խնայողության համար սոցիալիստական մրցության մասնակիցներին խրախուսելու սիստեմում մի շարք փոփոխություններ են մտցված։ Իհարկե, այդ սիստեմը դեռևս կատարյալ չէ, և ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1981 թ. հունիսի 30-ի որոշմամբ նախատեսվում է դրա հետագա կատարելագործում։ Այնուամենայնիվ, այնտեղ, որտեղ խելացիորեն են կիրառվում բարոյական և նյութական խթանները, դրանք դառնում են խնայողաբար տնտեսավարելու հզոր լծակներ։

Շատ կոլեկտիվներում բացված են խնայողության անձնական հաշիվներ, պարգևատրման ժամանակ հաշվի է առնվում յուրաքանչյուրի ներդրումը խնայատուփում։ Հարկ է էլեկտրաէներգիայի տնտեսման համար աշխատավորների լայն շարժում ծավալել արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության մեջ, տրանսպորտում, ոչ արտադրական ոլորտում։

Էկոնոմիկան պետք է լինի խնայողական. ՍՄԿԿ XXVI համագումարի այս պահանջի կենսագործումը կուսակցության, ժողովրդի գործն է։ Խնդիրն այն է, որ յուրաքանչյուր սովետական քաղաքացի ակտիվորեն մասնակցի արտադրության մեջ և կենցաղում խնայողության ու տնտեսման համար մղվող պայքարին, իր կոնկրետ ավանդը ներդնի այդ համաժողովրդական գործում, նպաստի անտնտեսվարության և վատնողության դրսևորման բոլոր փաստերի նկատմամբ անհանդուրժողականության մթնոլորտի ստեղծմանը։

Խնայողաբար ծախսել էլեկտրաէներգիան, հումքը և նյութերը՝ նշանակում է տնտեսել միլիոնավոր մարդկանց աշխատանքը, կապիտալ ներդրումները, ավելացնել արտադրանքի թողարկումը։"

---

# ՄԵՔԵՆԱՏՐԱԿՏՈՐԱՅԻՆ ՊԱՐԿԻ ՀԱՄԱԿԵՆՏՐՈՆԱՑՄԱՆ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹՅՈՒՆԸ

**Հ. Մ. ՄԱՄԻԿՈՆՅԱՆ**
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու
**Կ. Ա. ՄԱՐՈՒԽՅԱՆ**

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ, կազմակերպման ու կառավարման կատարելագործման, արտադրության կուլտուրայի ու աշխատանքի արդյունավետության բարձրացման գլխավոր ուղին արտադրության ինտենսիվացման հիման վրա ձեռնարկությունների խոշորացումն ու մասնագիտացումն է, գյուղատնտեսությունն աստիճանաբար արդյունաբերությանը մերձեցնելն ու արդյունաբերական հիմքերի վրա փոխադրելը։

Կոմունիստական շինարարության արդի փուլում կուսակցության ագրարային քաղաքականությունը նպատակամղված է լենինյան ցուցումների կենսագործմանը։

Երկրի շատ շրջաններում արդյունաբերական հիմունքներով ստեղծված կոլտնտեսային-սովխոզային ու ագրոարդյունաբերական արտադրամիավորումների փորձը վկայում է հանրային արտադրության կազմակերպման ու կառավարման այս ձևի բազմակողմանի առավելությունները։ Արդեն գործում են շուրջ տասը հազար միջտնտեսային ձեռնարկություններ և կազմակերպություններ, որոնց հիմնական ֆոնդերը անցնում են վեց մլն ռուբլուց։

Արտադրության կազմակերպման, պլանավորման ու կառավարման ձևերի կատարելագործման, նյութատեխնիկական միջոցներով ապահովվածության ու արդյունավետ օգտագործման շնորհիվ գործող միջտնտեսային միավորումներում 1980 թվականին, 1976 թվականի նկատմամբ, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է շուրջ 2,2 անգամ, մեկ ռուբլի ծախսումների դիմաց ստացվել է ավելի քան երեք ռուբլու արտադրանք, որը մոտ երեք ու կես անգամ ավելի է, քան առանձին կոլտնտեսություններում։

Երկրում արտադրաուժերի անշեղ զարգացումը և դրան համապատասխան սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործումը պահանջում են շարունակ կատարելագործել գյուղատնտեսական արտադրության կազմակերպման ու կառավարման ձևերը, խորացնել արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը, արմատավորել գիտատեխնիկական առաջընթացի նվաճումները, բարձրացնել աշխատողների որակավորումը։ Առաջնահերթ է դառնում նաև միջտնտեսային միավորումների արտադրական գործունեության բարելավումը, նորերի կազմակերպումը։

Մեր հանրապետությունում միջտնտեսային արտադրամիավորումներ ըստեղծվում են գերազանցապես բուսաբուծության ու անասնաբուծության բնագավառներում, մինչդեռ կազմակերպական այս միջոցառման ոլորտից բոլորովին դուրս է մնացել կոլտնտեսությունների և սովխոզների արտադրության սպասարկման բնագավառը։ Իսկ գիտության բուռն զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի շնորհիվ ստեղծված թանկարժեք ու բարձր արտադրո-

ղական մեքենաների շահագործման այժմյան եղանակը, երբ դրանք բաշխված են առանձին մեծ ու փոքր տնտեսություններին, աննպատակահարմար է։ Այդպիսի տնտեսություններում սարքավորումների կարողությունները լրիվ չեն օգտագործվում և շարունակ բարձրանում են մեքենայական աշխատանքների ինքնարժեքն ու վերանորոգումների արժեքը։

Միության շատ շրջաններում տեխնիկայի շահագործման, վերանորոգման ու պահպանության նպատակով կազմակերպված կոլտնտեսային-սովխոզային միջտնտեսային ձեռնարկությունների փորձը վկայում է, որ այն գյուղատնտեսության կոմպլեքս մեքենայացման, մեխանիզմների ու սարքավորումների առավել արդյունավետ օգտագործման ու որակյալ վերանորոգման հուսալի ձև է։ Մոլդավական հանրապետության Ջադիր-Լունգի շրջանում ստեղծված մեքենաօգտագործման ու վերանորոգման միջտնտեսային միավորումում երեք տարվա ընթացքում մեկ էտալոնային տրակտորի արտադրողականությունը բարձրացել է 17 տոկոսով, օրական ու հերթափոխային արտադրողականությունը՝ 27—28 տոկոսով, իսկ կատարված աշխատանքների ինքնարժեքը, էտալոնային հեկտարի հաշվով, իջել է 11,5 տոկոսով։ Տպավորիչ է տրակտորների վերանորոգումների ծախսերի կրճատումը. միայն պահեստամասերի ծախսերը նկատելիորեն պակասել են. 624 հազար ռուբլու փոխարեն ծախսվել է 491 հազար ռուբլի և դա այն դեպքում, երբ միավորման մեքենաների թիվն ու դրանց կատարած աշխատանքների ծավալը զգալիորեն մեծացել է։

Մեր հանրապետության գյուղատնտեսությունը շարունակ համալրվում է նոր, բարձր արտադրողական տեխնիկայով՝ տրակտորներով, կոմբայններով, ավտոմեքենաներով, անասնաբուծական ֆերմաների համար սարքավորումներով և այլն։ 1980 թվականին յուրաքանչյուր կոլտնտեսության ու սովխոզի համապատասխանաբար ընկնում էր 13 և 16 տրակտոր, 11 և 14 բեռնատար ավտոմեքենա։ Հաջողությամբ իրագործվում է գյուղատնտեսական աշխատանքների կոմպլեքս մեքենայացումը և էլեկտրիֆիկացումը։ Գյուղատնտեսական արտադրության մեջ մեկ աշխատողի հաշվով էներգազինվածությունը 1980 թվականին կազմել է 11,8 ձիաուժ՝ 1970 թվականի 7,4-ի փոխարեն, իսկ էներգաապահովվածությունը (100 հեկտար վարելահողի հաշվով) 482 ձիաուժ՝ 345-ի փոխարեն։

Հանրապետությունում տրակտորային աշխատանքների ծավալը 1980 թվականին կազմել է մոտ 7 մլն հեկտար պայմանական վար, մեկ էտալոնային տրակտորի հաշվով՝ օրական 5,1 և միջին տարեկան 793 հեկտարի դեպքում։ Ներկայումս մեծ աշխատանք է տարվում բարձր արտադրողական տեխնիկայով գյուղատնտեսությունը զինելու նպատակով։ Մեքենայական պարկը համալրվում է հզոր տրակտորներով, կատարելագործված կոմբայններով ու մեծ բեռնատարողություն ունեցող ավտոմեքենաներով։

Սակայն հարկ է նշել, որ վերջին տարիներին հանրապետության մեքենատրակտորային պարկի մասնատվածության հետևանքով տեխնիկայի օգտագործման արդյունավետությունն իջնում է։ Այսպես, մեկ էտալոնային տրակտորի հաշվով օրական արտադրաքանակը 5,9 հեկտար պայմանական վարից իջել է մինչև 5,1-ի, իսկ մեկ հեկտար պայմանական վարի ինքնարժեքը բարձրացել է 13 տոկոսով։ Տեխնիկայի օգտագործման արդյունավետության ցուցանիշները հատկապես ցածր են Աբովյանի, Ամասիայի, Արթիկի, Եղեգնաձորի, Իջևանի, Թումանյանի շրջաններում։

Հաշվարկները ցույց են տալիս, որ տարբեր շրջանների տնտեսություններ միավոր հողատարածության հաշվով հավասարաչափ չեն ապահովված տեխնիկայով. տնտեսությունների մի մասում մեքենաները թերբեռնված են, մյուսում՝ գերբեռնված։ Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում մեկ տնտեսության հաշվով տրակտորների միջին քանակը տատանվում է 4-ից մինչև 29,5 միավորի սահմաններում կամ մոտ 7,4 անգամ։ Անհավասարաչափ են ծանրաբեռնված հացահատիկահավաք կոմբայնները։ Տնտեսություններում զգալի չափով տատանվում են նաև մեքենատրակտորային պարկի օգտագործման տնտեսական արդյունավետության ցուցանիշները։ Օրինակ, մեկ էտալոնային տրակտորի հաշվով հերթափոխային արտադրաքանակը (պայմա-



նական վար հեկտարներով) տատանվում է 1,5—8,3 հեկտարի սահմաններում կամ 5,5 անգամ, մեկ հացահատիկահավաք կոմբայնի՝ 0,9—11,5 հեկտարի միջև կամ շուրջ 12 անգամ, եգիպտացորենհավաք կոմբայնի՝ 1—3,9 հեկտարի կամ 3,9 անգամ, իսկ սիլոսահավաք կոմբայնի՝ 0,5—9,5 հեկտարի սահմաններում կամ 19 անգամ։ Վատ է կազմակերպված նաև տեխնիկայի օգտագործման դիսպետչերական ծառայությունը, որը նույնպես բացասաբար է անդրադառնում մեքենաների օգտագործման արդյունավետության վրա։

Նյութատեխնիկական սպասարկման ներկա կարգը հանգեցնում է պահեստամասերի մատակարարման փոշիացմանը, որի հետևանքով որոշ տնտեսություններում զգացվում է դրանց սուր պակաս։ Տնտեսությունների մեծ մասը հնարավորություն չունի կազմակերպելու հստակորեն կարգավորված ինժեներատեխնիկական ծառայություն։ Տեխնիկան կոլտնտեսություններին վաճառելու ներկա կարգը տնտեսություններին ստիպում է ստեղծել վերանորոգման սեփական բազա, որոնք, որպես կանոն, աչքի են ընկնում իրենց սակավազորությամբ։ Նման գաճաճ արհեստանոցների առկայությունը, անբավարար սարքավորվածությունը և որակյալ ինժեներատեխնիկական կադրերի ու վարպետների պակասը շատ դեպքերում նման արհեստանոցների շահագործումը դարձնում են անարդյունավետ։ Ահա թե ինչու կոլտնտեսությունների ու սովխոզների ճնշող մեծամասնության համար նպատակահարմար է իրենց տեխնիկական միջոցները կենտրոնացնել մասնագիտացված միջտնտեսային տնտհաշվարկային միավորումներում։ Այդպիսի կոոպերացման նպատակն այն է, որ միջտնտեսային միավորման մեջ կենտրոնացվեն և՛ համապատասխան արտադրամիջոցները, և՛ աշխատանքները, իսկ դա հնարավորություն կընձեռի բարձրացնելու տեխնիկայի օգտագործման արդյունավետությունը, զարկ տալու գյուղատնտեսական մթերքների արտադրությանը։ Անվիճելի փաստ է, որ տեխնիկայի համակենտրոնացման պայմաններում մեքենաների աշխատանքային օրերի ավելացման շնորհիվ համապատասխան ծավալի աշխատանքի կատարման ընթացքում պակասում է համատիպ մեքենաների և սարքավորումների պահանջը։

Այժմ գյուղատնտեսական տեխնիկայի շահագործման, վերանորոգման և սպասարկման միջտնտեսային կազմակերպությունները ստեղծվում են հիմնականում որպես ինքնուրույն տնտեսություններ, գործում են տնտհաշվարկային հիմունքներով և ունեն իրենց առանձին հաշվեկշիռը։ Այդպիսիք կարող են կազմակերպվել նաև գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման շրջանային միավորումներին կից։ Տեխնիկայի ռացիոնալ օգտագործման նպատակով, երկրի մի շարք շրջաններում այն համակենտրոնացվում է շրջանային ագրոարդյունաբերական միավորումներում, որոնք ունեն նաև տեխնիկայի շահագործման, վերանորոգման և սպասարկման բաժանմունքներ։

Գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման ու կառավարման կենտրոնացումը առավել անհրաժեշտ է դառնում այժմ, երբ ավելի ու ավելի են մեծանում մեքենաների էներգակարողությունները։ Մինչդեռ շատ տնտեսություններում հզոր, բարձր արտադրողական մեքենաների զգալի մասը գյուղատնտեսական աշխատանքների սեզոնի մի ոչ մեծ ժամանակահատվածում է միայն գործում, քանի որ հաճախ դրանց համար համապատասխան ծավալի աշխատանք չի լինում։ Օրինակ, այնպիսի մի թանկարժեք մեքենա, ինչպիսին հացահատիկահավաք կոմբայնն է, մեզ մոտ շատ տնտեսություններում աշխատանքի համապատասխան ծավալ չունենալու պատճառով տարվա ընթացքում օգտագործվում է 7—8, իսկ որոշ տնտեսություններում՝ 4—5 օր։ Հզոր տրակտորները նույնիսկ լավագույն դեպքում օգտագործվում են միայն կիսով չափ։ Հաճախ մեքենաների որակի, հզորացման տեմպերի աճը գերազանցում է տվյալ տնտեսության աշխատանքների ծավալի աճին, որը, ինչ խոսք, բացասաբար է անդրադառնում մեքենաների ռացիոնալ օգտագործման վրա։

Գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման կազմակերպական նոր ձևերի ներդրման հարցում դրական փորձ են կուտակել մեր հանրապետության Վարդենիսի, Հրազդանի և այլ շրջաններում։ Սակայն, ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի 1981 թ. հուլիսյան պլենումը, տեխնիկայի համակենտրոնացման առա-

շադիմական մեթոդները և դրա հիման վրա մեքենաների օգտագործման արդյունավետության բարձրացումը խիստ դանդաղ են արմատավորվում մեզանում։

Տեխնիկայի միջտնտեսային կոոպերացումը հնարավորություն է ընձեռում կենտրոնացնել տրակտորները, կոմբայնները, գյուղատնտեսական մյուս մեքենաները, շեշտակիորեն բարձրացնել դրանց օգտագործման արդյունավետությունը։ Այդպիսի միջտնտեսային կազմակերպությունները փայատեր տնտեսությունների փոխարեն իրենց վրա են վերցնում բոլոր այն գործարքների կատարման պարտականությունները, որոնք կապված են գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման շրջանային միավորման հետ՝ տեխնիկայի ձեռքբերման, սպասարկման, վերանորոգման ասպարեզում։ Տնտեսությունները, որպես իրավահավասար պայմանագրային կողմեր, տարվա սկզբին պատվիրում են պահանջվող աշխատանքների ծավալը, որակը, կատարման ժամկետները։ Փորձը ցույց է տալիս, որ աշխատանքների կազմակերպման այս ձևը խիստ նպատակահարմար է ու օգտավետ։ Տնտեսություններն այլևս չեն մտահոգվում պահեստամասերի ձեռքբերման, տեխնիկայի վերանորոգման, վառելիքի հայթայթման մասին։ Կոմպլեքսային տեխնիկական սպասարկման միջտնտեսային ձեռնարկությունները, ստանալով պատվերներ, ունենալով համապատասխան որակավորման կադրեր, տնտեսությունների մասնագետների հետ ժամանակին մշակում են աշխատանքների կատարման միջոցառումները, նշում ժամկետները և հաշվարկում, թե երբ և տեխնիկական ինչպիսի միջոցներ պետք է կենտրոնացնել պլանների կատարումը բոլոր ցուցանիշներով ապահովելու համար։

Միջտնտեսային միավորումներում մեքենաների ու սարքավորումների կենտրոնացման, վերանորոգման, արտադրատեխնիկական սպասարկման ու նյութատեխնիկական բազայի համատեղ կազմակերպման, մեքենատրակտորային պարկի օգտագործման և դրանց պահպանման առավելությունները ցույց տալու համար փորձենք վերլուծել տեխնիկայի օգտագործման ցուցանիշները երկու խումբ տնտեսություններում։ Մի խմբում ընդգրկել ենք տնտեսապես ուժեղ ձեռնարկությունները, իսկ մյուսում՝ թույլ։ Բնական է, որ համեմատաբար խոշոր տնտեսություններում, մեքենաօգտագործման ցուցանիշները զգալիորեն բարձր են։ Տնտեսապես ուժեղ սովխոզներում սեզոնի ընթացքում, մեկ տրակտորի հաշվով, արտադրաքանակը 28,1 տոկոսով, իսկ հերթափոխում՝ 27,3 տոկոսով բարձր է, քան տնտեսապես թույլերում, իսկ հացահատիկահավաք կոմբայնների և մեքենաների արտադրողականությունը բարձր է սեզոնում՝ 21,2 և հերթափոխում՝ 13,5 տոկոսով։ Դրա շնորհիվ առաջիններում շուրջ 20 տոկոսով ցածր են գյուղատնտեսական տեխնիկայի շահագործման (պայմանական վարի հաշվով) ծախսումները։

Տեխնիկական սպասարկման նոր ձևերի ներդրման շնորհիվ Վարդենիսի շրջանի մեքենաօգտագործման ցուցանիշները զգալիորեն բարձր են անգամ հանրապետության առաջավոր տնտեսությունների համապատասխան տվյալներից։ Այսպես, մեկ տրակտորի հաշվով արտադրաքանակը (պայմանական էտալոնային հեկտարներով) բարձր է սեզոնում 25,4, իսկ հերթափոխում՝ 21,8 տոկոսով։ Վարդենիսի շրջանում բարձր են նաև հացահատիկահավաք կոմբայնների օգտագործման ցուցանիշները՝ սեզոնում 22,2, իսկ հերթափոխում 51,9 տոկոսով։ Այստեղ զգալիորեն ցածր են գյուղատնտեսական տեխնիկայի շահագործման վրա կատարված ծախսերը։ Տեխնիկայի կենտրոնացումը միաժամանակ ապահովել է գյուղատնտեսական հիմնական աշխատանքների կատարման ժամկետների կրճատումը, մեքենաների օգտագործման արդյունավետության բարձրացումը և միավոր մեքենաաշխատանքի ինքնարժեքի իջեցումը։

Վարդենիսի շրջանի տնտեսություններում 1978 թվականին շուրջ 14 հազար հեկտար հացահատիկի բերքահավաքը կատարվել է 10 օրում, մինչդեռ միևնույն բնակլիմայական գոտում գտնվող մյուս շրջաններում բերքահավաքը



տևել է 20—30 օր, թեև այդ շրջաններում հացահատիկով զբաղեցված տարածություններն ավելի քիչ են եղել։

Իհարկե, ստեղծված մեքենամիավորման աշխատանքներում կան նաև չլուծված խնդիրներ։ Այստեղ մեքենաները դեռևս մնում են տնտեսությունների տնօրինության տակ, մի հանգամանք, որ խոչընդոտում է մեքենատրակտորային պարկի ռացիոնալ կոմպլեկտավորմանը։ Չի լուծված մեխանիզատորների հիմնական և լրացուցիչ վարձատրության կարգը, հստակ սահմանված չեն աշխատողների պարտականությունները, նրանց պատասխանատվությունն ու շահագրգռությունը գյուղատնտեսական արտադրության վերջնական արդյունքի՝ բերքատվության ու մթերատվության բարձրացման, արտադրվող մթերքների որակի բարելավման, կորուստների վերացման, ինքնարժեքի իջեցման և արտադրանքի ավելացման համար։

Այս ամենը վկայում է այն մասին, որ միայն գյուղատնտեսական տեխնիկայի շահագործման, վերանորոգման և սպասարկման ասպարեզում միջոցների և կադրերի կենտրոնացումն է հնարավորություն ընձեռում էապես բարեփոխելու մեքենատրակտորային պարկի օգտագործման ցուցանիշները, պայմաններ ստեղծում տեխնիկական սպասարկման արհեստանոցների աշխատանքը ռացիոնալ կազմակերպելու, պահեստամասերի մատակարարումն ու պրոֆիլակտիկ նորոգումները բարելավելու, կադրերն առավել նպատակահարմար օգտագործելու համար։

Հաշվի առնելով գյուղատնտեսության մեքենայացման ասպարեզում միջտնտեսային կազմակերպությունների մեծ առավելությունները, մեր կարծիքով, նպատակահարմար է հանրապետությունում և, առաջին հերթին, Արարատյան հարթավայրի շրջաններում, լայնորեն կազմակերպել մեքենատրակտորային պարկի շահագործման, վերանորոգման և սպասարկման միջտնտեսային ձեռնարկություններ։ Մեքենատրակտորային պարկի օգտագործման ասպարեզում նման միջոցառման անհրաժեշտությունը բխում է գյուղատնտեսական արտադրության կազմակերպման և սպասարկման ձևերի կատարելագործման արդի պահանջներից։

ՀԿԿ Կենտրոնական կոմիտեի 1981 թ. հուլիսյան պլենումը խնդիր դրեց լուրջ ուշադրություն նվիրել գյուղատնտեսական տեխնիկայի օգտագործման կազմակերպման նոր, առաջադիմական ձևերի ներդրմանը։ Տեխնիկայի համակենտրոնացումը հնարավորություն կընձեռի կարճ ժամկետներում, բարձր որակով կատարելու գյուղատնտեսական աշխատանքները և դրանով իսկ կնպաստի մթերքների արտադրության ավելացման առաջադրանքների հաջող կատարմանը։

# ՄԱՐԴՈՒ, ՀՈՂԻ ԵՎ ՄԵՏԱՂԻ ԴԱՇՆՈՒԹՅԱՄԲ

ՊԱՏՎԱԿԱՆ ՇԱՔԱՐՅԱՆ
Լրագրող

**ԼՐԱԳՐՈՂԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆԸ**, հիշողությունները ու ուրախությունը ամենից առաջ հանդիպումներն են մեծ ու լիարյուն բնավորությունների հետ: Հերթական գործուղումն ինձ տանում է Կամո: Մեր մեքենան մի քանի րոպեում կտրում-անցնում է լեռնային երիտասարդ քաղաքի գրեթե բոլոր փողոցները և կանգ առնում Կամո—Մարտունի ճանապարհի երկարությամբ ձգվող կարմիր պարսպի առաջ: Կարդում եմ՝ «Գյուղատնտեսության նյութատեխնիկական ապահովման Կամոյի շրջանային միավորում»: Դրվագազարդ դարպասից մտնում եմ ներս և միանգամից ընկնում զարմանալի գեղեցիկ մի աշխարհ: Պարսպից այն կողմ, մետաղյա ծանր մեքենաների փոխարեն, ծաղկուն պուրակներ են՝ ցայտաղբյուրներով, ջրավազաններով ու սալարկված անցուղիներով, ավելի հեռվում՝ խնձորի երիտասարդ այգին: Սա ձեռնարկությո՞ւն է, թե՞ հանգստյան տուն: Եվ ես մի պահ վարանած կանգ եմ առնում:

— Առաջ եկեք,— բարեհոգաբար ժպտալով՝ ասում է տարեց պահակը, թերևս բավականություն զգալով այն բանից, որ միավորման գեղեցիկ տեսքը զարմանք է պատճառում հյուրերին:

Այս պայմաններում, բնական է, ծանոթությունն սկսվում է ոչ թե արտադրական խոշոր մասնաշենքերից, այլ ձեռնարկության արտադրության կուլտուրայից, այն միջավայրից, որտեղ աշխատում է Կամոյի մեխանիզատորների հրաշալի կոլեկտիվը:

Միավորման տարածքում իշխում են ոչ միայն կանաչը, ծառն ու ծաղիկը, այլև կուլտուրայի, կենցաղի, ժամանցի ու հանգստի օջախները: Մեխանիզատորներն ունեն իրենց ճաշարանը, բաղնիքը, կենցաղի տունը, գրադարանը՝ 10 հազար կտոր գրքով: Կոլեկտիվի 400 անդամներ գրքի բաժանորդներ են: Հապա 400 տեղանոց կինոդահլի՞ճը՝ սեփական կինոսարքավորումներով: Այստեղ շաբաթական մեկից-երկու անգամ ցուցադրվում է գեղարվեստական կամ մասնագիտական կինոնկար: Ե՛վ դժվար, և՛ հաճելի այդ գործը հասարակական կարգով կատարում է խառատ Վանիկ Խաչատրյանը:

Բոլոր արտադրամասերն ունեն կարմիր անկյուն, սոցիալիստական պարտավորությունների վահանակ և առաջավորների պատվո տախտակ:

Նախանձելի ակտիվությամբ է գործում բուժկետը: Ուղերթի դուրս գալուց առաջ բժշկական ստուգման են ենթարկվում բոլոր 120 ավտովարորդները, նրանց՝ մեքենան վարելու ռեակցիան: Արդյունավետությամբ գործում են աշխատանքի անվտանգության և անվթար երթևեկության կաբինետները, որտեղ որոշվում է վարորդների պատրաստության աստիճանը, ինֆորմացիա է տրվում եղանակի մասին:

Բայց միավորման կոլեկտիվի գլխավոր նվաճումը կարելի է համարել ոչ թե դա, ոչ թե արտադրական հաջողությունները, որոնք այսօր բնորոշ են գրեթե բոլոր ձեռնարկություններին, այլ այն, որ շուրջ վեց հարյուր աշխատողներից ոչ մեկը չի ծխում: Այո՛, ո՛չ մեկը՝ ո՛չ աշխատանքի վայրում և ո՛չ էլ դրսում: Իհարկե, դժվար է եղել սկիզբը: Նույնիսկ կոլեկտիվը չի հավատացել այդպիսի հանդուգն որոշման հաջողությանը: Թեկուզև կասկածելով, թերահավատությամբ, բայց կատարվել է առաջին քայլը: Օրինակ են տվել կոմունիստները, իսկ ավելի ուշ նախաձեռնությանն արձագանքել են կոլեկտիվի բոլոր անդամները: Միավորման ղեկավարության հասցեով ստացվել են տասնյակ նամակներ, որոնց հեղինակները՝ ծնողներ, կանայք, դպրոցական երեխաներ, շնորհակալություն են հայտնում իրենց բնակարանի օդը ծխախոտի հեղձուցիչ ծխից մաքրելու, իրենց հարազատին ծխելու վնասակար սովորությունից ետ պահելու համար: Արդեն կա հրաշալի նախաձեռնության առաջին ընդօրինակողի հասցեն՝ Կամոյի անտառտնտեսություն: Անտառագործները, հետևելով շրջանային միավորման կոլեկտիվի օրինակին, նույնպես որոշել են հրաժարվել ծխելուց:

Այսօր հաճելի է նշել, որ այդ եզակի գեղեցիկ նախաձեռնությունը ծնվել է Կամոյում և հավատում ենք, որ այն շատ հետևորդներ կգտնի ինչպես հանրապետությունում, այնպես էլ ողջ երկրում:

**ՄԻՆՉԵՎ ՑՈՒՑԱԴՐԱԿԱՆ** ձեռնարկություն դառնալը, մինչև երկու անգամ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշի արժանանալը, շատ այլ մրցանակներ ու դիպլոմներ նվաճելը, ժամանակի առումով կարճ, բայց գործով մեծ ուղի է անցել միավորման կոլեկտիվը:

— 1961 թվականին, մինչև մեր կառավարիչ Վասիլ Հակոբյանի այստեղ գալը, ունեինք մի փոքրիկ գրասենյակ, մի խառատային հաստոց, խարխուլ մի պահեստ, փոքրիկ մի հողակտոր, վաճառքը և արտադրությունը միասին չէին անցնում մի քանի տասնյակ հազար ռուբլուց: Ոչ միայն հանրապետությունում, նույնիսկ Կամոյում մեր տեղը կարգին չէին իմանում,— պատմում է միավորման տարեց պահակը՝ Տոլիկան Ղարիբյանը,— աչքերիս չեմ հավատում, ոնց-որ հրաշք լինի կատարված:

Հետո ես մտնում եմ պլանային բաժին, հաշվապահություն, զրուցում գլխավոր ինժեների, առաջատար մասնագետների ու բանվորների հետ: Նրանք բերում են համեմատություններ ու փաստեր, որոնց ուղղակի դժվարանում ես հավատալ: Ինկապես, ընդամենը քսան տարի առաջ այստեղ ապիտակահող անապատ է եղել, որի մի անկյունում բեկբեկուն ձայնով թրթռացել են մի քանի տրակտորներ ու մեքենաներ: Հիմա միավորման արտադրական մակերեսը հասել է 120 հազար քառակուսի մետրի, այսինքն՝ օգտագործելի տարածքը մեծացել է 11,5 անգամ: 1963 թվականին երիտասարդ կառավարիչ Վասիլ Հակոբյանի նախաձեռնությամբ դրվում է հազար քառակուսի մետր մակերեսով՝ հանրապետությունում ամենախոշոր արհեստանոցի հիմքը: Շատ չանցած օբյեկտը գործարկվում է: Անմիջապես միավորման կոլեկտիվն իր ձեռքն է վերցնում շրջանի տրակտորների նորոգման գործը: Այնուհետև կառուցվում են նոր արտադրամասեր, արհեստանոցներ, տեխնիկական սպասարկման ժամանակակից կայաններ, ստեղծվում է փոխանակային ֆոնդ: Այսպես աստիճանաբար ձևավորվում էր շրջանային միավորումը, որը տարիներ անց պիտի դառնար Միության մասշտաբով ցուցադրական ձեռնարկություն:

Միավորման արտադրական կյանքի աշխուժացման առաջին իսկ օրից մեծ ուշադրություն է նվիրվում նոր տեխնիկայի արմատավորման գործին:

— Կուսբյուրոյի քարտուղար ընտրվելուց հետո,— պատմում է միավորման կառավարիչի տեղակալ Ռուբիկ Աղաջանյանը,— ես ավելի մոտիկից ծանոթացա մեր կուսկազմակերպության անցած ուղուն, ընդունած կարևոր որոշումներին: Առաջին իսկ ժողովներից մեկում կոմունիստներն անդրադարձել են նոր տեխնիկայի ձեռքբերման և ներդրման պրոբլեմներին: Այդ գիծն այնուհետև կարմիր թելի պես անցել է մեր կոլեկտիվի, կուսկազմակերպության գործունեության միջով: Վերջին անգամ այդ նույն հարցը քննարկեցինք այս տարվա փետրվարին: Կոմունիստ-ինժեներ Նորիկ Նալբանդյանը, որը հիմնականում կատարում է նոր տեխնիկայի հետ առնչվող հանձնարարությունները, հանդես եկավ հետաքրքիր զեկուցումով և հանրագումարի բերեց այդ ասպարեզում կոլեկտիվի ծավալած աշխատանքը: Եվ պետք է ասել՝ ուրախանալու շատ բան կա: Մեր լեռնային շրջանում հողագործության և անասնապահության բազմաթիվ պրոցեսներ մոտեցվում են լիակատար մեքենայացման ու ավտոմատացման մակարդակին: Սովորական, շատ սովորական երևույթ է դարձել կարտոֆիլի, ծխախոտի, խոտաբույսերի ցանքի, մշակության ու բերքահավաքի մեքենայացումը, անասնապահական շենքերում ավտոմատ խմոցների, կթի ագրեգատների, գոմաղբի հեռացման, կերի մատուցման և այլ սարքավորումների տեղադրումը: Անում և արդեն մեծ թիվ են կազմում կոմպլեքսային մեքենայացված ֆերմաները: Վերջնական նպատակն է՝ ֆերմաների աշխատանքի մեքենայացումը հասցնել հարյուր տոկոսի: Միավորման մասնագետները այն կարծիքին են, որ այդ օրը հեռու չէ: Միավորման մեխանիզատորները ժամանակակից տեխնիկան համարձակորեն գործի են լծում արտադրության բոլոր օղակներում: Այդ պրոցեսը դարձել է կենսական օրինաչափություն:

մոնյանին: Կոմունիստ ինժեները հավաքում է մի խումբ ընդունակ երիտասարդների և նրանց հետ մեկնում Կիև (հետագայում այդ խմբին տրվել է «Կիևյան բրիգադ» պատվավոր անունը)՝ «վիլիսների» նորոգման գործը մեծ փորձ ունեցող ուկրաինացի բարեկամներից սովորելու համար: Ձեռնարկումը պսակվում է հաջողությամբ: Վերադառնալով տուն՝ Կիևյան բրիգադը արդյունավետորեն ձեռնարկում է վիլիսների հիմնական նորոգումն ամբողջ հանրապետության մասշտաբով: Կարճ ժամանակում այդ ասպարեզում Կամոն դառնում է ճանաչված կենտրոն: Ահա թե ինչպիսի բարի անուն կարող է բերել խելացի նախաձեռնությունը:

Մյուս արտադրամասերին հավասար մեծ ու արժեքավոր գործ է կատարում ավտոմեքենաների տեխնիկական սպասարկման կայանը: Այստեղ «ախտորոշող» հատուկ սարքավորումների միջոցով ճշգրիտ որոշվում է մեքենայի հանգույցների անսարքությունը և, ըստ այդմ կատարվում է համապատասխան «բուժում»: Դրանից հետո միայն վարորդն իրավունք է ստանում մեքենան դուրս բերել երթուղի: Լավագույն մասնագետներից մեկը՝ Գագիկ Հովհաննիսյանը, օրական ընդունում և ճանապարհում է 3—4 մեքենա:

Կայանի արդյունավետ գործունեության շնորհիվ երկարել են մեքենաների կյանքը և անվթար շահագործումը, 25 տոկոսով կրճատվել է պահեստամասերի պահանջը, իսկ դա շատ բան է նշանակում լեռնային ճանապարհներ ունեցող շրջանի համար:

Մեկուկես տասնամյակ առաջ այստեղ նորոգել են միայն տրակտորներ: Այժմ միավորման բազան այնքան հզոր է, որ շրջանի տնտեսություններին ազատել է սեփական արհեստանոցներ պահելու, տեղերում նորոգումներ կատարելու հոգսերից: Ո՞րն է այս նոր մեթոդի առավելությունը: Ամենից առաջ թերևս այն, որ նորոգման բոլոր պրոցեսներն ավտոմատացված և մեքենայացված են: Ձեռնարկության կոլեկտիվը տարեկան նորոգում է 130—140 տրակտոր, 250—280 ավտոմեքենա, 400 ավտոշարժիչ:

— Մենք տնտեսություններին համոզիչ օրինակներով ցույց ենք տալիս, որ կենտրոնացումն արդարացնում է իրեն, որ նորոգումը մեզ մոտ շատ ավելի էժան ու որակով է կատարվում, քան տեղերում,— ասում է Վասիլ Հակոբյանը:

Այդ բանն արդեն գիտակցել են տնտեսությունները: Դրա օգտին է խոսում նաև այն խոշոր աճը, որը տեղի է ունեցել վերջին 10—15 տարում, սկզբնական շրջանի 12 հազարի դիմաց արհեստանոցը ներկայումս տարեկան կատարում է մեկ միլիոն ռուբլու նորոգման աշխատանք:

Նորոգման գործում մեծ ներդրում ունեն ռացիոնալիզատոր, խառատ, կուսշրջկոմի անդամ, ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի արծաթե մեդալակիր Վոլոդյա Ավդալյանը, Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր, հավաքող բանվոր Գառնիկ Նաջարյանը: ՈՒԱԶ մեքենաների հաջող նորոգումը գլխավորապես կապված է Կիևյան բրիգադի անդամ, երիտասարդ մասնագետ Աշոտ Նավասարդյանի անվան հետ: Այդ բրիգադից աչքի է ընկնում նաև մի ուրիշ երիտասարդ՝ Ալբերտ Մկրտչյանը: Նրանց կատարած աշխատանքն իր որակով քիչ է զիջում գործարանային տարբերակին:

ՀԱԿՈԲՅԱՆՆԵՐԻ ԳԵՐԴԱՍՏԱՆԻ կենսագրությունը հիրավի գեղեցիկ ասք է սովետական կարգերի հաղթանակի մասին, այն հիմնականի մասին, որ մեծ հեղափոխություն կատարած երկիրը ձեռք է բերել անցած վեցուկես տասնամյակում: Սկսել ոչնչից, հասնել ամեն ինչի: Մոտավորապես այսպես կարելի է բնորոշել Հակոբյանների նվաճումը: Դրա համար էլ ես ուզում եմ մանրամասն պատմել նրանց մասին:

Երկուսն էլ ծայրահեղ չքավոր ընտանիքի զավակներ էին, նույն դառը ճակատագրի մարդիկ՝ և՛ Սերգոն, և՛ Բավականը: Նրանք իրենց բախտը կապեցին հեղափոխության հետ, նոր կարգերի հետ, և կյանքը ցույց տվեց, որ դա էր միակ ճիշտ ուղին: Սերգոն, որ բարձրահասակ, գեղեցիկ, ուժեղ տղամարդ էր, անդամագրվեց կուսակցությանը՝ իրեն անմնացորդ նվիրաբերելով գյուղում նոր կարգերի հաղթանակին: Հետո Սերգոն ու Բավականը հող են ստանում, կառուցում իրենց սեփական տունը, ստեղծում իրենց բազմանդամ ընտանիքը:

... Ծեր ու պայծառ գյուղ է Նորադուզը: Այն իր տոհմիկ կեցվածքով, պալատներ հիշեցնող իր գեղեցիկ առանձնատներով, մարդկային քաղաքակրթության մասին պատմող հարյուրավոր հյուսկեն քարերով և հատկապես՝ Նորադուզի առնական այրերով ոչ թե տպավորվում, այլ ուղղակի մխրճվում է հիշողության մեջ: Հենց այդ երևելի Նորադուզի երևելի տոհմերից մեկն է Հակոբյանների գերդաստանը: Նահապետը՝ Սերգոն, վաղուց արդեն չկա: Բայց



Նորադուզում բարության, մարդկայնության լեգենդներ են պատմում նրա մասին: Պատմում են, որ պատերազմի ծանր օրերին, չնայած իր տասը երեխաներն էլ քաղցած էին, բայց ձկնորսի իր համեստ վաստակը ճանապարհին հերթով բաժանում և հաճախ ունայնաձեռն էր վերադառնում տուն:

— Կռիվ է,— ասում էր,— կռվողների երեխաներն էլ մերն են, պարտավոր ենք օգնել:

Այսօր գյուղում բոլորն էլ երախտագիտությամբ են հիշում նրա անսահման բարությունը, սերը դեպի մարդիկ:

Չնայած ծեր հասակին, տակավին աշխուժություն է պահպանում Բավական Մեծ մայրիկը: Նա հերոսուհի մայր է, դաստիարակել է տասը որդիներ, քառասունյոթ թոռներ և երեսունհինգ ծոռներ: Պարզապես հետաքրքիր է. Մեծ մայրիկի դուստրերից չորսը նույնպես հերոսուհի մայր են: Հակոբյաններն աճել, դարձել են արտադրության առաջավորներ, բժիշկներ, ինժեներներ, մանկավարժներ, երաժիշտներ, կուսակցական, սովետական, տնտեսական աշխատողներ: Նրանցից մեկն էլ Վասիլ Հակոբյանն է, որը ղեկավարում է գյուղտեխսպետկոմի շրջանային արտադրական միավորումը:

Բարդ, հետաքրքիր անձնավորություն է Վասիլ Հակոբյանը:

Մի առիթով Տերյանը գրել է, որ եթե տաղանդավոր գրողները հարստացնում են գրականությունը, ապա տաղանդավոր մարդիկ զարդարում են կյանքը: Այդ խոսքերը մեծ չափով վերաբերում են հենց Վասիլ Հակոբյանին: Հայրենի հողը գեղեցկացնող մարդ է, աշխատողին իր աչքում բարձրացնող մարդ: Առանձնահատուկ արվեստով կարողանում է ճառագող բարությունը ներդաշնակորեն զուգակցել խստագույն պահանջկոտության հետ: Նա ուշադիր, հոգատար է կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի նկատմամբ, բայց նաև սովոր չէ տեսնել, որ տրված հանձնարարությունը, լինի հույժ կարևոր, թե երկրորդական, անտեսվի կամ թե կատարվի ուշացումով: Եվ մեխանիզատորները ճանաչում, հարգում ու խորապես ընդունում են իրենց ղեկավարին: Նրանք սրտանց ուրախ են, որ նա ճիշտ այդպիսին է: Հակոբյանի սևեռուն հայացքն ընդգրկում է ձեռնարկության բոլոր փոքր ու մեծ գործերը: Միավորման մասին զրուցելիս հարկ չեղավ կանչել ոչ տնտեսագետի, ոչ հաշվապահի, ոչ արտադրության պետի, ոչ ինժեներների: Բոլոր հարցերի հստակ, ճշգրիտ ու սպառիչ պատասխանները տալիս էր անձամբ ինքը:

Լինելով տեխնիկայի բնագավառի մարդ, գուցեև առաջին հայացքից Հակոբյանը թողնում է «չոր» մարդու տպավորություն: Բայց դա խաբուսիկ է: Երբ հաղթահարում ես ծանոթության առաջին արգելքները, զգում ես, որ այդ արտաքին խստության ներքո կանգնած է զարմանալի գեղեցիկ, խորաթափանց մարդը, իր ամենօրյա կյանքով մարդու և մարդկայնության սահմանները ընդլայնող մարդը: Նրա ղեկավարած տարիներին տասնյակ անգամ աճել է ձեռնարկությունը, մոդեռնացվել է արտադրությունը, միավորումը դուրս է բերվել միութենական ուղեծիր: Հակոբյանը դիսերտացիա է պաշտպանել «Քարքարոտ հողերի իրացման պայմանները Սևանի ավազանում» թեմայով և ստացել տեխնիկական գիտությունների թեկնածուի գիտական աստիճան: Թվում է, թե կարելի էր գոհանալ ձեռք բերածով, հանգստանալ փառքի դափնիների վրա: Բայց ո՛չ: Անհանգիստ այդ մարդն առավոտից երեկո միավորումում է, օրվա մեջ հասցնում է խոսք փոխանակել աշխատողներից շատերի հետ, անձամբ մոտենում, հետևում է մեքենաների նորոգման որակին, խորանում բոլոր փոքր ու մեծ գործերի ու հոգսերի մեջ: Իսկ երեկոյան տանը նստում է դոկտորականի վրա:

Իր հազվագյուտ աշխատասիրությամբ հայրն ընդօրինակման հրաշալի դաս է տալիս զավակներին, որոնցից ոմանք արդեն կյանք են մտել, մյուսներն ուսանում են դեռ և ամենուրեք՝ մեծ ու փոքր գործերում, բարձր են պահում այս ճանաչված գերդաստանի պատիվը:

ԲԱՐԻ ՍԻՐՏ ու հրաշագործ ձեռքեր ունեն Կամոյի մեխանիզատորները: Այդ մարդիկ անմնացորդ սիրով ու նվիրումով շենացնում են իրենց տունը, հողը, հայրենի աշխարհը: Գյուղատնտեսության հետ առնչվող ամեն մի աշխատանք ունի իր սեզոնը: Միավորման կոլեկտիվի սեզոնն ըստ էության սկսվում է տարվա բոլոր եղանակներին: Ձմռանը գնացեք Կամո, և դուք կհամակվեք մարդու, հողի ու մետաղի դաշնությունից ծնունդ առնող ոչ ձմեռային մի տրամադրությամբ: Նայում ու չես հասկանում, թե որտեղի՞ց է գալիս մետաղի ու տեխնիկայի նրանց պաշտամունքը: Զարմանում ես՝ ո՞վ է դրել նրանց մեջ այդ մեծ հավատը: Եթե ձմեռ է, ուրեմն, նորոգում են տեխնիկան: Եթե գարուն է՝

վարում ենք ու ցանում, մշակում ենք ու բուժում ցանքերը։ Եթե ամառ է, ուրեմն, բերքահավաք է՝ ամբողջ Կամոյի լայնքով ու երկայնքով։ Իսկ եթե աշուն է՝ էլի բերքահավաք է, ընդմիջումներին՝ ուրախություն, հարսանիքներ, ծնունդներ։ Այդ եռանդով ու այդ աշխատանքով է կոլեկտիվն անցած հնգամյակը կատարել երեք տարի ինն ամսում։

Իր հաղթական երթն է սկսել նոր հնգամյակը։ Միավորման կոլեկտիվը հիմնավորապես պայքարում է բարձր բերքի համար։ 1981 թվականը հայտարարվել է կերի կուտակման հարվածային տարի։ Յուրաքանչյուր օղակ, յուրաքանչյուր բրիգադ ստանձնել է բարձր պարտավորություն։ Միայն կոմերիտական-երիտասարդական բրիգադը խոստացել է սեփական տեխնիկայով պատրաստել 8—10 հազար տոննա սիլոս ու սենաժ, հնձել 1500 հեկտար խոտհարք։

Առջևում սպասում են նոր ծրագրեր ու գործեր։ Միավորումը միայն մեկ տարում յուրացնելու է 800 հեկտար գյուղատնտեսական հողատեսքեր, 1180 հեկտար խոտհարք։ Այդ ընթացքում նորոգվելու են 250 ավտոմեքենա, 180 տրակտոր, բազմաթիվ գյուղգործիքներ ու մեքենաներ։ Ընդ որում, շրջանի գյուղատնտեսությանը մատակարարվելու է 800 հազար ռուբլու նոր տեխնիկա։ Ամբողջ արտադրությունը և վաճառքը կազմելու են 7,5—8 միլիոն ռուբլի։

Է՛լ ավելի շատ գործեր կան կատարելու հնգամյա ծրագրով։ Դա բնական է։ Չէ՞ որ հինգ տարին մեծ ժամանակ է այնպիսի որոնող, ստեղծագործող կոլեկտիվի համար, ինչպիսին Կամոյի մեխանիզատորներինն է։ Նրանց դավանանքը քարից հող, հաց ու երջանկություն արարելն է։

Հանդիպումը հետաքրքիր մարդկանց հետ ինչ-որ բանով նման է մի նոր երկիր ճանապարհորդելուն։ Ահա ես վերադարձել եմ հերթական գործուղումից, և իմ խոհերի մեջ իր զարմանահրաշ պատույտն է կատարում Կամոն, բնությամբ խիստ, բայց մարդկային հանդիպումների տաք շնչով բնակեցված տղամարդկային բնավորությունների այդ զարմանալի երկիրը։

*Հայաստանի կոմերիտմիության*
*60-ամյակի առթիվ*

# ՊԱՆԾԱԼԻ ՈՒՂԻ

*ԱՄԵՆ ՄԻ ՏՈՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ երիտասարդության համար հաճելի ու սպասված առիթ է՝ ժողովրդական տնտեսության ամենատարբեր բնագավառներում, գիտության, մշակույթի, կրթության բոլոր ասպարեզներում ձեռք բերած իր նվաճումներն ի մի բերելու, նոր ծրագրերով ու նախաձեռնություններով ոգեշնչվելու, հայրենիքի, կուսակցության հանդեպ որդիական սերն ու նվիրվածությունը դրսևորելու համար։ Իսկ երբ նշվում է այնպիսի մի հոբելյան, ինչպիսին Հայաստանի լենինյան կոմերիտմիության 60-ամյակն է, ինչ խոսք, հանրագումարի պիտի բերվի պայքարի ու հաղթանակների նրա փառապանծ պատմությունը, որի արժանի պսակը հանդիսացավ հայրենիքի բարձր պարգևը՝ Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանը։*

*Այդ պատմության բոլոր փուլերում կոմերիտական սերունդներին միավորել է միշտ պայքարի առաջավոր գծում լինելու, խիզախության ու նվիրվածության օրինակ ծառայելու ազնիվ մղումը։ Եվ այսօրվա կոմերիտական սերունդն ուժեղ է ոչ միայն նրանով, որ օժտված է գալիքին նայելու, երազելու, գեղեցիկ մտահղացումների տրվելու ունակությամբ, այլև նրանով, որ ետ նայելու, անցյալը իմաստավորելու պահանջ ունի։*

*Մեծ մաքառումների, անձնուրացության գնով են իրենց առջև դրված խնդիրները լուծել առաջին կոմերիտականները, որոնցից շատերի անունները պսակվեցին փառքով և ընդմիշտ կմնան Հայաստանի կոմերիտմիության հերոսական տարեգրության առաջին էջերում։*

*Ղուկաս Ղուկասյան, Աղասի Խանջյան, Արմենակ Բուդաղյան... Այդ նրանց անմիջական ջանքերով ստեղծվեց Երևանի երիտասարդ կոմունիստների «Սպարտակ» կազմակերպությունը, որը դարձավ Հայաստանի լենինյան կոմունիստական երիտասարդական միության կորիզը՝ աստիճանաբար կոմերիտականների նոր ջոկատներ միավորելով Հայաստանի մյուս քաղաքներում ու բնակավայրերում՝ Ալեքսանդրապոլում, Դիլիջանում, Նոր-Բայազետում։*

*Իսկ երբ 1920 թվականի գարնանը Հայաստանի քաղաքներում ու գյուղերում բռնկվեցին աշխատավորական հուզումները, վերահաս հեղափոխական իրադրության պահանջն էր՝ ամրապնդել նորաստեղծ կոմերիտական կազմակերպությունները, միավորել նրանց ջանքերը։ Եվ ստեղծվեց Հայաստանի բանվոր-գյուղացիական երիտասարդական կազմակերպությունների կենտրոնական կազմակերպական բյուրոն։*

*Կոմերիտականները կուսակցության հանձնարարությամբ բնակչության շրջանում թռուցիկներ էին տարածում, նորանոր մարդկանց ներգրավում հեղափոխական շարժման մեջ։ Նրանցից շատ-շատերը իրենց հայրերի ու ավագ եղբայրների հետ կռվի ելան դաշնակցական իշխանության դեմ։ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանում ազատության արշալույսն ազդարարող հաղթական համազարկերի մեջ որոտում էին նաև նրանց հրացանները։*

*Հաղթեց սովետական իշխանությունը, բայց շատ էին ու բազմազան երկրի նոր տերերի առջև ծառացած խնդիրները։ Նրանք դաշնակցական կառավարությունից ստացել էին տխուր ժառանգություն՝ քայքայված ու ավերակ մի եր-*

կիր, որ առատ էր միայն մոլեգնող համաճարակներով, սովյալ գաղթականների բազմությունններով, փողոցներում թափառող որբ ու անապաստան երեխաների խմբերով։ Լիակատար քայքայման էր հասել առանց այն էլ հետամնաց արդյունաբերությունը, անչափ ծանր էր գյուղատնտեսության վիճակը։ Երկիրը լարել էր իր ողջ ուժերը դժվարին կացությունից դուրս գալու համար։ Եվ քաղաքական, տնտեսական բոլոր կարևորագույն խնդիրների լուծման գործում կուսակցության կողքին էր նրա հավատարիմ օգնականը՝ կոմերիտմիությունը։

1921 թվականի օգոստոսի 21-ին Երևանում կայացած Հայաստանի կոմերիտմիության I համագումարը որոշակիորեն սահմանեց նորաստեղծ Սովետական հանրապետության ժողովրդական տնտեսության վերականգնման ու հետագա զարգացման գործում երիտասարդության առաջնահերթ խնդիրները։ Համագումարը մեծ ոգևորություն առաջ բերեց կոմերիտականների ու երիտասարդների շրջանում։ Նրանք ավելի հաճախ էին շաբաթօրյակներ կազմակերպում՝ դրսևորելով աշխատանքային խանդավառություն և էնտուզիազմ։ Երևանում, օրինակ, նրանց ուժերով կարգի բերվեցին երկաթուղագծերը, նորոգվեցին վագոններն ու շոգեքարշերը։ Իրենց ակտիվությամբ ու ձեռներեցությամբ աչքի ընկան հատկապես Ալեքսանդրապոլի դեպոյի և տեքստիլ գործարանի, Երևանի տպագրիչ բանվորների, «Արարատ» գործարանի կոմերիտական բջիջները, որոնց շարքերից հետագայում դուրս եկան բազմաթիվ կոմերիտական, կուսակցական աշխատողներ, գիտության, մշակույթի գործիչներ։

Կոմերիտմիության առաջնահերթ խնդիրներից մեկը անգրագիտության վերացումն էր։ Միայն գրագետ, գաղափարապես պատրաստված երիտասարդը կարող էր պայքարել գյուղի և քաղաքի սոցիալիստական վերակառուցման համար, անգրագետներին ու բատրակներին ներգրավել հանուն նոր կյանքի մղվող պայքարի մեջ։ Կոմերիտմիությունը քաղաքում ու գյուղում դարձավ անգրագիտության վերացման առաջին կազմակերպիչներից մեկը՝ արժանանալով կուսակցության ու կառավարության բարձր գնահատականին։ Անգրագիտության վերացման բազմաթիվ խմբակներում սիրով ու բարձր պատասխանատվությամբ պարապում էին կոմերիտականները։

Երկրի ինդուստրացման ծավալուն ծրագիրը, որ առաջ քաշվեց կուսակցության XIV համագումարում, մեծ ջանքեր էին պահանջում բանվոր դասակարգից, գյուղացիությունից, մտավորականությունից։ Ողջ սովետական երկրում ծավալված կառուցման համանվագը իր ոլորտն առավ նաև Հայաստանը։ Հանրապետությունում մեծ ծավալի աշխատանքներ սկսվեցին հատկապես էներգետիկ բազա ստեղծելու համար, առանց որի անկարելի էր զարգացնել էկոնոմիկան ու կուլտուրան, կառուցել ու շահագործման հանձնել արդյունաբերական այն ձեռնարկությունները, որոնք նոր կյանքի պիտի կոչեին երկիրն ու նրա մարդկանց։

Լենինականի և Երևանի հիդրոէլեկտրակայանների կառուցման ամենադժվարին տեղամասերում էին կոմերիտականներն ու երիտասարդները, մեծ էր նրանց դերը կարևորագույն այդ կառույցները ժամկետից զգալիորեն շուտ շահագործման հանձնելու գործում։ Նրանք ակտիվորեն մասնակցեցին նաև Երևանի ձեթ-օճառի, ծխախոտի, պահածոների, կարբիդի, Երևանի և Հոկտեմբերյանի բամբակազտիչ, Երևանի, Լենինականի մեխանիկական և այլ գործարանների շինարարությանը։ Կոմերիտմիությունը ոչ միայն ապահովում էր երիտասարդության հարվածային աշխատանքը ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառներում, այլև հետևողականորեն զբաղվում էր նրանց տեխնիկական գիտելիքների հարստացման, արտադրության կատարելագործման հարցերով, անհաշտ պայքար ծավալում չարաշահումների, շռայլումների դեմ։

Մեծ էր հատկապես թեթև հեծելազորային ջոկատների դերը աշխատանքային կարգապահության ամրապնդման, պարապուրդների վերացման, արտադրությունը կազմալուծողների դեմ պայքար կազմակերպելու գործում։ 1930 թվականի վերջերին Հայաստանի կոմերիտական բջիջներում արդեն գործում էր թեթև հեծելազորային 600 ջոկատ։

Կոմերիտականների, երիտասարդների համար պայքարի ու խիզախումների լայն ասպարեզ բացվեց առաջին հնգամյակի աշխատանքային ճակատներում։ Կոմերիտմիությունն արդեն հզոր ուժ էր՝ պատրաստ լուծելու հասարակական ու ժողովրդատնտեսական կարևոր խնդիրներ։ Եվ երբ 1929 թվականի ապրիլին հանրապետության սովետների VI համագումարը հաստատեց Հայաստանի ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանը, կոմերիտականներն արդեն նախանշել էին այդ ծրագրով նախատեսվող աշխատանքային մի շարք կարևորագույն բնագծեր ու գործի դրել իրենց երիտասարդական եռանդն ու խանդավառությունը։



Բազմազան էին առաջին հնգամյա ծրագրով հայ կոմերիտականների առջև դրված խնդիրները։ Նրանց էին սպասում էներգետիկայի նորակառույցների՝ Ձորագէսի ու Երևանի էլեկտրակայանների երկրորդ հերթի, Քանաքեռգէսի շինարարությունները։ Նրանք պիտի նորագույն հաստոցներ ու սարքավորումներ տեղադրեին Ղափանի, Ալավերդու պղնձահանքերում ու գործարաններում, կառուցեին Կիրովականի և Ալավերդու քիմկոմբինատները, Արարատի ցեմենտի գործարանը, վերակառուցեին ու ընդլայնեին Երևանի կարբիդի, ձեթ-օճառի, կաշվի, Լենինականի տեքստիլ և մեխանիկական գործարանները, Անիի պեմզայի և Արթիկի տուֆաքարի արտադրությունները։

Եվ գործի անցավ կոմերիտմիությունը՝ աշխատանքային բոլոր ճակատներում հանդես գալով մեկը մյուսից արժեքավոր նախաձեռնություններով, օր-օրի ծավալելով ու բորբոքելով սոցիալիստական մրցությունը։

Հայաստանի կոմերիտմիության տարեգրության փայլուն էջերից է Ձորագէսի շինարարությունը։ ՀԼԿԵՄ VII համագումարում վերցնելով էլեկտրակայանների կառուցման շեֆությունը՝ կոմերիտմիությունն իր գլխավոր ուժերը կենտրոնացրեց հատկապես Ձորագէսի և Քանաքեռգէսի շինարարության վրա։ Կոմերիտականները կարևորագույն այդ կառույցների ամենադժվարին ու պատասխանատու տեղամասերում էին, և նրանց աչքից չէին վրիպում շինարարության հոգսերն ու պրոբլեմները։

Բազմաթիվ ու բազմազան դժվարություններ հաղթահարվեցին հատկապես Ձորագէսի շինարարությունում։ Տոկունության, նվիրվածության բազմաթիվ օրինակներ ցույց տվեցին կոմերիտականներն ու երիտասարդները։ Երբ երկաթի պակաս զգացվեց կառույցում, նրանք ակտիվ պայքար ծավալեցին երկաթի մնացորդների կորստի դեմ, շաբաթօրյակներ կազմակերպեցին երկաթի ջարդոն հավաքելու համար։ Երբ երկաթուղին դժվարանում էր ժամանակին շինարարության համար անհրաժեշտ նյութեր տեղափոխել և հարկավոր էր ավելացնել եղած սակավաթիվ վագոնների շրջապտույտը, արագացնել դրանց բեռնումն ու բեռնաթափումը, հարյուրավոր կոմերիտականներ աշխատանքից հետո սկսեցին մասնակցել վագոնների բեռնաթափմանը և ապահովեցին շինանյութերի կանոնավոր մատակարարումը։ Նրանք ակտիվորեն մասնակցեցին նաև էլեկտրակայանի սարքավորումների ձեռքբերման, տեղափոխման աշխատանքներին։ Իսկ հետո, ցրտաշունչ ձմռան պայմաններում, հաջողությամբ և ճիշտ ժամանակին ավարտեցին դրանց տեղակայումը։ Եվ, իրոք, տեղին էր այն գնահատականը, որին արժանացան նրանք 1932 թվականի նոյեմբերի 14-ին՝ Ձորագէսի գործարկման առթիվ. Հայաստանի կոմերիտմիության դրոշին ամրացվեց Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանը։

Մեծ էր կոմերիտմիության դերը գյուղի սոցիալիստական վերակառուցման դժվարին ու տևական պրոցեսում։ Կուսակցության XV համագումարը, ընդունելով կոլեկտիվացման նոր կուրսը, իր որոշման մեջ առանձնահատուկ տեղ հատկացրեց կոմերիտմիության գործունեությանը։ Գյուղում կոմերիտականները նոր կյանքի առաջին կառուցողներն էին, կուսակցության հենարանը։

Էջմիածնի գավառի Սամաղարի շրջանում ստեղծվեցին մեքենաօգտագործման յոթ ընկերություններ, որոնց վարչության անդամների կեսից ավելին կոմերիտականներ էին։ Զանգեզուրի, Էջմիածնի գավառներում, Նոր-Բայազետի մի շարք գյուղերում կոմերիտականները կոլեկտիվ ձևով մշակում էին զանազան տեխնիկական կուլտուրաներ։ 1927 թվականի վերջերին Հայաստանում կազմակերպված գյուղատնտեսական արտելների, կոմունաների, կոլտնտեսությունների բոլոր անդամների մոտ 25 տոկոսը կոմերիտականներ էին։ Իսկ 1933-ին

*ղարկում ենք շինջոկատ, որտեղ ուսանողների հետ երկու ամսվա համատեղ կյանքը, աշխատանքը, կոլեկտիվը շատ բան են փոխում նրանց մեջ։*

*ԼԿԵՄ կոմիտեն շեֆական աշխատանքի ընթացքի և արդյունքների մասին հաճախակի լսում է հարցեր, հաղորդումներ։ «Երևանի համալսարան» բազմատպաքանակ թերթում պարբերաբար երևում է «Ջահ» էջը՝ նվիրված շեֆական աշխատանքներին։ ԼԿԵՄ կոմիտեն կազմակերպում է «Լավագույն ուսուցիչը», «Լավագույն կոմերիտական մանկավարժական ջոկատ», «Լավագույն ջոկատավար» մրցույթներ։*

*Հարուստ, բազմաբովանդակ է համալսարանի կոմերիտական կազմակերպության ծավալած շեֆական աշխատանքը, որը տարիների ընթացքում նոր որակ և նոր ձևեր է ստանում։ Մեր կազմակերպությունը Հայաստանի լենինյան կոմունիստական երիտասարդական միության առաջավոր ջոկատներից է և իր ողջ գործունեությամբ նպաստում է նրա պանծալի ավանդույթների հարստացմանը։ Կուսակցության մեծ հոգատարությանը, կառավարական բարձր պարգևին, որին արժանացել է Հայաստանի կոմերիտմիությունը, մենք կպատասխանենք գերազանց ուսմամբ և հայրենանվեր նոր գործերով։*

**ՀՐԱՆՈՒՇ ՀԱԿՈԲՅԱՆ**
**Երևանի պետական համալսարանի**
**ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար**

---



# ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՏԵՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

**Զ. Լ. ՄՈՎՍԻՍՅԱՆ**

**ԴԵՌԵՎՍ XIX ԴԱՐԻ** վերջին մարքս-լենինյան թեորիան իր անմիջական արձագանքն ունեցավ հայ առաջավոր մտավորականության շրջանում։ Խորապես ըմբռնելով դարաշրջանի ամենաառաջադիմական ուսմունքի նշանակությունը՝ այն ծավալել էր ակտիվ գործունեություն գիտական կոմունիզմի դասականների ստեղծագործությունների թարգմանության ու հրատարակման նպատակով։

Ուշագրավ է, օրինակ, **Կ. Մարքսի** և **Ֆ. Էնգելսի** Կոմունիստական կուսակցության մանիֆեստի թարգմանությունն ու հրատարակումը։ **Արդեն 1887 թ.** այն թարգմանվել էր ֆրանսերենից, որի մասին վկայում է ինքը՝ **Ֆ. Էնգելսը** Մանիֆեստի **1888 թ.** անգլերեն հրատարակության առաջաբանում. «Հայերեն թարգմանությունը, որ մի քանի ամիս առաջ պետք է տպագրվեր Կոստանդնուպոլսում, ինչպես ինձ հաղորդել են, լույս չտեսավ այն պատճառով միայն, որ հրատարակիչը վախեցել է գիրքը լույս ընծայել **Մարքսի** անունով, իսկ թարգմանիչը չի համաձայնել «Մանիֆեստը» ներկայացնել որպես իր աշխատությունը»։

Մանիֆեստի հայերեն հրատարակությունն իրականացվում է միայն **1904 թ.**՝ **Վ. Ի. Լենինի** և **Ստ. Շահումյանի** անմիջական նախաձեռնությամբ, կուսակցության Կենտկոմին կից ստեղծված հայոց և վրաց լեզուներով կուսակցության սոցիալ-դեմոկրատական գրականության հրատարակման հանձնաժողովի կողմից։ **Այն** գերմաներենից թարգմանել էր **Ստ. Շահումյանը**։ Նույն թվականին հրատարակվում է նաև **Կ. Մարքսի** Վարձու աշխատանք և կապիտալ աշխատությունը։

**Իսկ Ֆ. Էնգելսի** աշխատություններից Գիտական սոցիալիզմը հրատարակվել է դրանից մոտ տասը տարի առաջ՝ **1894 թ.** Վիեննայում։

Մարքսիզմ-լենինիզմի դասականների աշխատությունների թարգմանությունն ու հրատարակումը նոր թափով ծավալվեց **1920 թ.** հետո, երբ Հայաստանում հաղթանակեցին սովետական կարգերը։ Խորհրդանշական է, որ Պետհրատի հրատարակած առաջին գիրքը **Կ. Մարքսի** Վարձու աշխատանք և կապիտալ-ն էր։ Իսկ **1920—1976 թթ.** ընթացքում **Կ. Մարքսի** և **Ֆ. Էնգելսի** ստեղծագործությունները հրատարակվել են **117** անգամ՝ **743** հազար ընդհանուր տպաքանակով, **Վ. Ի. Լենինի** ստեղծագործությունները՝ **413** անգամ՝ **2** մլն **441** հազար օրինակ տպաքանակով։ Այդ ստեղծագործությունների հրատարակման նման ծավալն անհրաժեշտ բազա հանդիսացավ նաև նրանց մատենագիտության ստեղծման համար։

Մարքսիզմ-լենինիզմի դասականների ստեղծագործությունների մատենագիտությունը թերևս ամենաբազմազանն է ու ճյուղավորվածը։ Այն իր արտահայտությունն է գտնում ինչպես նրանց առանձին ստեղծագործություններին նվիրված ցանկերում, նույնպես և ընդհանուր, թեմատիկ, երկրագիտական ցանկերում, ընթացիկ մատենագիտական հրատարակություններում, ժողովածուներում...

Չնայած **Կ. Մարքսի** և **Ֆ. Էնգելսի** աշխատությունների հայերեն հրատարակումը, ինչպես նշվեց, սկսվել էր վաղուց, սակայն նրանց ստեղծագործությունների մատենագիտության կազմման առաջին փորձն արվեց միայն **50-ական** թվականներին։

**1948 թ. ՀԿ(բ)Կ** Կենտրոնական կոմիտեի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը կազմում և հրատարակում է «Օրինակելի ցուցակներ» մարքսիստական-լենինյան թեորիան

ինքնուրույն կերպով ուսումնասիրողներին հանձնարարվող գրականության: Սակայն հանձնարարական այդ առաջին ցուցակները հեռու էին ամբողջական լինելուց և չունեին մատենագիտական բավարար մակարդակ:

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ստեղծագործությունների հայերեն հրատարակություններն իրենց առաջին համեմատաբար ամբողջական արտահայտությունն ստացան Ալ. Մյասնիկյանի անվան հանրապետական գրադարանի 1950 թ. հրատարակած գործում՝ Մարքսիզմ-լենինիզմի դասականների բիբլիոգրաֆիա: 1920—1 հունվարի 1950 թ.: Այն կազմել էին Լ. Մելքումյանը և Վ. Կարմենյանը: Ցանկը բաժանված է երկու հիմնական մասի՝ ժամանակագրական և այբբենական: Երկու բաժիններում էլ նյութերը ներկայացված են ըստ հեղինակների և ժամանակագրական կարգով առանձին տրված են Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի համատեղ ստեղծագործությունները:

Սակայն այս մատենագիտությունն ունի ըզգալի թերություններ. դրանում տեղ չեն գտել ՀՍՍՀ-ից դուրս տպագրված հրատարակությունները, պարբերական մամուլի նյութերը, մատենագիտությունն ընդհանրապես զուրկ է օժանդակ ապարատից և այլն: Բայց և այնպես, չնայած թերություններին, այդ մատենագիտությունը նշանակալից երևույթ էր մարքսիզմ-լենինիզմի դասականների ստեղծագործությունների հայերեն հրատարակություններն ի մի բերելու ասպարեզում:

Այն ընդհուպ մինչև 70-ական թվականները հրապարակի վրա եղած միակ գիտաօժանդակ մատենագիտական աղբյուրն էր:

ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական ֆիլիալի և ՀՍՍՀ պետական գրապալատի համատեղ ջանքերով հրատարակվեց Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունների հրատարակությունների մատենագիտություն: 1894—1973 թթ.: Մատենագիտությունը գիտական բարձր մակարդակով կազմել է Ե. Բաղդասարյանը:

Մատենագիտության կառուցվածքը թելադրված է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ստեղծագործություններն ամբողջական և մատչելի ներկայացնելու անհրաժեշտությունից: Այն ունի համահավաք բնույթ, քանի որ ընդգրկում է ինչպես Հայաստանում, նույնպես և նրա սահմաններից դուրս տպագրված հայերեն բոլոր հրատարակությունները:

Մատենագիտությունը բաղկացած է ժամանակագրական, այբբենական մասերից և հավելվածից: Ժամանակագրական բաժնում ըստ հրատարակության տեսակների նախ ներկայացված են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, ապա նրանց համատեղ աշխատությունները: Ներկայացված է ընտիր երկերի և ժողովածուների բովանդակությունը: Երկրորդ մասում նրանց աշխատությունների այբբենական ցանկն է, առանձնացված են միատեսակ հրատարակությունները («Առաջաբաններ», «Վերջաբաններ»): Թերևս նպատակահարմար կլիներ այբբենական ցանկը բաժանել երկու մասի, առանձին ներկայացնելով Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունները: Մատենագիտության մեջ առանձնացված է «Նամակներ» բաժինը, որտեղ ժամանակագրական կարգով տրված են նախ Մարքսի նամակները Էնգելսին, ապա Էնգելսի նամակները Մարքսին և հետո նրանց նամակներն այլ անձանց: Նամակները դասավորված են հասցեատերերի ազգանունների այբբենական կարգով: Սակայն այստեղ վիճելի է կազմողի մոտեցումը: Տրամաբանական կլիներ առանձնացնել Կ. Մարքսին և Ֆ. Էնգելսին այլ անձանց գրած նամակները և մեկ առանձին ցանկ կազմել դրանց համար, որը կհանդիսանար «Նամակներ» բաժնի անհրաժեշտ լրացումը: Այն մեծ օգնություն կլիներ ցանկից օգտվողներին՝ Կ. Մարքսին և Ֆ. Էնգելսին հասցեագրված նամակների մեջ արագ ու ճիշտ կողմնորոշվելու համար:

Առանձին ցանկերով ներկայացված են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի աշխատությունների հրատարակությունները, Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի ժողովածուները, թեմատիկ ժողովածուները: Մատենագիտությունն ունի նաև անվանացանկ, տեղեկություններ հրատարակման վայրի, մատենագիտական այլ հրատարակությունների վերաբերյալ, վիճակագրական տարբեր տվյալներ նրանց աշխատությունների հայերեն հրատարակությունների մասին:

Այս ամենը մատենագիտությունը դարձնում է արտակարգ արժեքավոր ու մատչելի: Վերջին շրջանում հրատարակված թերևս ամենահաջողված գիտաօժանդակ ցանկն է այն, որտեղ լուծված են գիտամեթոդական մի շարք հարցեր, որը լայն հեռանկարներ է բացում նըման բնույթի մատենագիտությունների հրատարակման ասպարեզում: Սակայն ափսոսանքով պետք է նշել, որ ցանկում տեղ չեն գտել պարբերականներում հրապարակված ստեղծագործությունները, որը, ինչ խոսք, առավել ամբողջական կդարձներ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունների հայերեն հրատարակությունների պատկերը: Մատենագիտությունից դուրս են մնացել նաև նրանց մասին եղած հայերեն բազմազան նյութերը, որոնք նրանց ժառանգության անբաժանելի մասն են կազմում: Եվ վերջապես տպաքանակի մասին: Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի հայերեն ամբողջ հրատարակություններն ամփոփող այս մատենագիտությունը հրատարակվել է ընդամենը 2000 օրինակ տպաքանակով: Բայց չէ՞ որ նրանց ստեղծագործական ժառանգությանը հաղորդակցվող ընթերցողների շրջանակը բավական լայն է— գիտական ամենատարբեր շրջաններ, կուսակցական, սովետական աշխատողներ, քաղաքական ուսուցման ցանցում ընդգրկվածներ, տարբեր բնույթի գիտական հիմնարկություններ և գրադարաններ: Մինչդեռ միայն մասսայական գրադարանների թիվն անցնում է 2000-ից:

Վատ չէր լինի, եթե Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի վերաբերյալ նման ծավալուն և օգտագործման լայն շրջանակներ ունեցող մատենագիտությունն ունենար նաև նրանց ստեղծագործությունները բնորոշող, հայերեն թարգմանությունների համառոտ պատմության և կենսագրական տվյալներ պարունակող ներածական, որը կհանդիսանար նման մատենագիտության անհրաժեշտ լրացումը:

Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի ստեղծագործությունների հրատարակությունների մատենագիտություններ հրատարակել է նաև ՀՍՍՀ ԳԱ հասարակական գիտությունների գիտական ինֆորմացիայի սեկտորը, որը 1971 թ. Մատենագիտություն մատենաշարով հրատարակել է առանձին ցանկեր մարքսիզմ-լենինիզմի դասականների վերաբերյալ:

Առաջին ցանկը նվիրված է Կ. Մարքսին, երկրորդը՝ Ֆ. Էնգելսին: Այս երկու ցանկերն ունեն նույն կառուցվածքը: Նախ՝ ներկայացված է նրանց աշխատությունները ժամանակագրական կարգով, այնուհետև՝ համատեղ աշխատությունները, թեմատիկ ժողովածուները, ապա Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի համատեղ թեմատիկ ժողովածուները: Կ. Մարքսի մատենագիտության մեջ առանձին տրված է նաև աշխատությունների այբբենական ցանկը: Այս ցանկերը նախատեսված են գիտական նեղ շրջանների՝ մարքսիստական գրականության հայերեն հրատարակությունների պատմությունն ուսումնասիրողների, նրանց գրական ժառանգությունը հետազոտողների համար: Ցանկալի կլիներ, որպեսզի դրանցում տեղ գտնեին նաև Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի մասին եղած հայերեն նյութերը:

Մարքսիզմ-լենինիզմի դասականների հայերեն թարգմանված երկերի մատենագիտության ռուսերեն հրատարակության նախաձեռնությունը ևս պատկանում է ինֆորմացիայի սեկտորին: Ճիշտ է, հրատարակվող հայերեն ցանկերում ընդգրկված նյութերի համար տրըվում էր վերնագրերի ռուսերեն թարգմանությունը, սակայն ռուսերեն ամբողջական մատենագիտության անհրաժեշտությունը ևս ըզգացվում էր: Եվ ահա 1972 թ. սեկտորը Մատենագիտություն մատենաշարով հրատարակում է «Издание К. Маркса, Ф. Энгельса, В. И. Ленина на армянском языке (1894—январь 1972)» ցանկը: Այս մատենագիտությունն արժեքավոր է հատկապես նրանով, որ տրված է մարքսիզմ-լենինիզմի դասականների հայերեն հրատարակությունների համառոտ պատմությունը: Մատենագիտությունն ընդգրկում է մոտ ութ տասնամյակում եղած հայերեն ամենատարբեր հրատարակությունները: Նյութերը դասավորված են ժամանակագրական կարգով, առանձին ներկայացված են համատեղ աշխատությունները, թեմատիկ ժողովածուները: Կ. Մարքսի ստեղծագործությունների համար տրված է նաև առանձին այբբենական ցանկ, որպիսին, ցավոք, կազմված չէ Ֆ. Էնգելսի և Վ. Ի. Լենինի ստեղծագործությունները: Ի դեպ, այն միակ ցանկն է, որտեղ միասին ներկայացված են մարքսիզմ-լենինիզմի դասականների ստեղծագործությունները: Սեկտորի ինչպես այս, նույնպես և համանման մյուս հրատարակություններում նշվում են այն գրադարանները, ուր գըտնըվում են հիշատակված հրատարակությունները: Սակայն այս ցանկը ևս զուրկ է օժանդակ ապարատից:

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունների վերաբերյալ կարևոր տեղեկատու աղբյուրներ են նաև առարկայական, այբբենական և այլ բնույթի ցանկերը, որոնք հրատարակվել են նրանց առանձին ստեղծագործությունների, թեմատիկ ժողովածուների հետ: Դրանցից առավել ուշագրավը հայերեն Ընտիր երկերի եռհատորյակի հետ հրատարակված ցանկերն են: Եռհատորյակում ընդգրկված են Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի փիլիսոփայության, քաղաքատնտեսության և գիտական կոմունիզմի տեսությանը նվիրված կարևորագույն երկերը: Հատորներից յուրաքանչյուրը պարունակում է համապատասխան անվանացանկ և առարկայական ցանկ, որոնցից հատկապես առարկայական ցանկը խիստ անհրաժեշտ է նըրանց ստեղծագործություններում կողմնորոշվելու համար: Նման լիարժեք առարկայական ցանկ հայերեն հրատարակվում է առաջին անգամ:

Մարքսիզմ-լենինիզմի դասականների մասին եղած հայերեն հրատարակությունները մասնակիորեն արտացոլվել են ՀՍՍՀ գիտությունների ակադեմիայի հրատարակած մատենագիտություններում, որոնք ընդգրկում են ՀՍՍՀ ԳԱ 1936—1975 թթ. տպագիր արտադրանքը: Մատենագիտությունները կազմվել են

ՀՍՍՀ ԳԱ ֆունդամենտալ գրադարանի կողմից:

Սկսած 1963 թ. հրատարակված երկրորդ մատենագիտությունից, որն ընդգրկում է 1957—1961 թթ. հրատարակությունները, առանձնացվել է «Մարքսիզմ-լենինիզմ» բաժինը, որտեղ ներկայացված են ինչպես առանձին հրատարակությունները, նույնպես և ակադեմիայի պարբերականներում հրատարակված նյութերը: Այդ մատենագիտությունները պարունակում են բավականաչափ նյութեր մարքսիզմ-լենինիզմի դասականների կյանքի ու գործունեության, տարբեր ստեղծագործությունների մասին: Դրանք արժեքավոր աղբյուր են, քանի որ հրապարակի վրա նրանց մասին եղած նյութերի համահավաք մատենագիտություն դեռևս չկա:

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ստեղծագործությունների և նրանց մասին եղած նյութերի մատենագրումը իրականացվում է նաև ընթացիկ մատենագիտական պարբերականներում: ՀՍՍՀ պետական գրապալատի օրգաններ՝ Տպագրության տարեգիրը և Հոդվածների և գրախոսությունների տարեգիրը, որոնք հրատարակվում են ամիսը մեկ անգամ և սկսվում են «Մարքսիզմ-լենինիզմ» բաժնով:

Մարքսիզմ-լենինիզմի դասականների ստեղծագործությունները և նրանց մասին հրատարակված նյութերը ներկայացվում են նաև Ալ. Մյասնիկյանի անվան հանրապետական գրադարանի կողմից 1970 թ. հրատարակվող Նոր գրքեր ինֆորմացիոն ցանկի Հասարակական քաղաքական գիտություններ սերիայում: Ուշագրավ ընթացիկ հանձնարարական ցանկ է նաև նույն գրադարանի՝ եռամսյակը մեկ հրատարակվող Հիշարժան տարեթվեր օրացույցը (հրատարակվում է 1947 թվականից. մինչև 1977 թ. կոչվում էր Նշանավոր և հիշարժան տարեթվերի օրացույց): Այսպես, 1970 թ. № 4-ում հրատարակված է ցանկ՝ նվիրված Ֆ. Էնգելսի 150-ամյակին (էջ 71—75): Համանման մի ցանկ է հրատարակվել նաև Կ. Մարքսի ծննդյան 160-ամյակի առնչությամբ (1978 թ., № 2, էջ 84—90): Այդ ցանկերում լայնորեն ներկայացված են նրանց ստեղծագործությունները, ինչպես և նրանց մասին եղած տարբեր նյութեր: Ափսոսալ կարելի է, որ օգտագործման լայն շրջանակներ ունեցող այդ հրատարակությունը չի ընդգրկում նրանց մասին եղած պարբերականների նյութերը ևս, որոնք հրատարակվում են ամենատարբեր առիթներով և հատկապես հոբելյանական տարեթվերի կապակցությամբ:

Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ստեղծագործությունները իրենց մատենագիտական արտահայտությունն են ստանում նաև ներգրքային և ներամսագրային ձևով, որոնք սակայն առայժմ չունեն նյութերի ներկայացման բավարար մակարդակ:

Հայկական մատենագիտության թերևս ամենաուշագրավ էջերը կապված են Վ. Ի. Լենինի անվան հետ: Այն ստեղծվել է նրա բազմահարուստ ժառանգության հայերեն թարգմանության և հրատարակման ծավալուն բազայի հիման վրա:

Իսկ Լենինի ստեղծագործությունները, նրա ստեղծած հեղափոխական ուսմունքը Հայաստան էր թափանցում դեռևս դարասկզբին «Իսկրայի», իսկ հետո արդեն նրա Երկերի թարգմանության ու հրատարակման շնորհիվ: Այդ գործի հիմնադիրները հանդիսացան նրա հավատարիմ զինակիցներ, աննկուն իսկրայականներ Բ. Կնունյանցը, Ս. Սպանդարյանը, Ստ. Շահումյանը և ուրիշներ:

Հայերեն թարգմանված և հրատարակված առաջին գործերից են Միապետությունը տապալվում է և «Ծանուցում» «կազմակերպիչ կոմիտե» կազմելու առթիվ-ի վերջաբանը, որոնք լույս են տեսել ՌՍԴԲԿ Կովկասյան միութենական կոմիտեի օրգան «Պրոլետարիատի կռիվը» թերթի 1903 թ. №№ 2—3-ում (ապրիլ—մայիս), իսկ 1904 թ. առանձին հրատարակությամբ տպագրվում է Գյուղական չքավորությանը ստեղծագործությունը:

Վ. Ի. Լենինի աշխատությունների թարգմանությունն ու հրատարակումը ևս ծավալվեց հատկապես Հայաստանում սովետական իշխանության հաղթանակից անմիջապես հետո: Այն ընթացել է ՀամԿ(բ)Կ XIII համագումարի «Մամուլի մասին» որոշման պահանջներին համապատասխան: Իսկ որոշման մեջ ասվում է. «Անհրաժեշտ է անհապաղ միջոցներ ձեռնարկել Միության բոլոր լեզուներով Վ. Ի. Լենինի ստեղծագործությունների բազմատիրաժ ժողովրդական հրատարակությունների լույսընծայման համար, հատկապես ուշադրություն նվիրելով այդ հրատարակությունների խմբագրական կողմին, դրանց մատչելիության, էժանացման ու տարածման վրա»: Անցած տասնամյակների ընթացքում Լենինի ստեղծագործությունները հայերեն հրատարակվել են ամենատարբեր առիթներով: Հրատարակվել են նրա Ընտիր երկերը, Երկերը թեմատիկ ժողովածուները և այլն: 1941—1970 թթ. իրականացվեց երկերի չորրորդ հրատարակությունը՝ 45 հատորով:

Լենինի ստեղծագործությունների հայերեն հրատարակության մի նոր բարձր փուլ է նրա երկերի լիակատար ժողովածուի հրատարակու-



թյունը, որն սկսվել է 1974 թ.: Առաջնորդի ծննդյան 100-ամյակի կապակցությամբ հանրապետության հրատարակչությունները հրատարակեցին Վ. Ի. Լենինի 25 անուն աշխատություն՝ 115 հազար ընդհանուր տպաքանակով:

Մեծ արժեք է ներկայացնում նաև ՍՄԿԿ և սովետական պետության հիմնադրին վերաբերող բազմաբնույթ նյութերի հրատարակումը— պաշտոնական փաստաթղթեր, հիշողություններ, կենսագրական գրքեր ու հոդվածներ նրա կյանքի առանձին շրջանների, գիտական, քաղաքական, պետական գործունեության տարբեր կողմերի վերաբերյալ, գեղարվեստական ամենատարբեր բնույթի ստեղծագործություններ և այլն: Լենինյան այս հրատարակությունները ստացել են իրենց բազմակողմանի մատենագիտական դրսևորումը:

Վ. Ի. Լենինի աշխատությունների մատենագրումը մեզ մոտ իրականացվում էր սովետական իշխանության առաջին իսկ տարիներից, պետական մատենագիտական օրգանների միջոցով: 20-ական թվականներին նրա աշխատությունները, նրա մասին եղած նյութերը հիմնականում մատենագրվում էին պարբերականների էջերում, զանազան առիթներով: Դրանցից ամենաուշագրավը «Կոմունիստ» ամսագրի նախաձեռնությունն է՝ (սկսած 1928 թ. 6-րդ համարից) Ի՞նչ պիտի կարդալ Լենինի և լենինիզմի մասին ցանկով: Վեցերորդ համարում ներկայացված է «Խորհրդային Հայաստան» թերթի 1924—1927 թթ. տպագրված նյութերը («Կոմունիստ», 1928 թ., № 6, էջ 98—102): Հաջորդ 7—8 համարներում ընդգրկված են «Նոր աշխարհ» (Թիֆլիս), «Վերելք» (Երևան), «Նորք» (Երևան), «Երիտասարդ բոլշևիկ» (Երևան), «Ժողովրդական լուսավորություն» (Երևան), «Գրական դիրքերում» (Երևան), «Կոմունիստ» (թերթ, Երևան) ամսագրերի և լրագրերի էջերում զետեղված լենինյան ստեղծագործությունները, նրա մասին եղած նյութերը: Այդ ցանկն աչքի է ընկնում նյութերի ընդգրկման ծավալով: Ներկայացված են մոտ 200 տարբեր բնույթի նյութեր:

Իսկ Լենինի հրատարակությունների առանձին մատենագիտությունը հրատարակվել է 1934 թ.: Դա Ա. Բաբայանի կազմած Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն թարգմանություններ ցանկն է: Սովետական Միությունում հրատարակված նման բնույթի առաջին ցանկերից է այն:

Ցանկը բաղկացած է երկու մասից. Լենինի երկերի հայերեն թարգմանությունների ժամանակագրական ցանկ և Լենինի երկերի հայերեն թարգմանությունների այբբենական ցանկ: Առաջին մասն իր հերթին բաժանված է առանձին ժամանակաշրջանների՝ 1918—1920 թթ., 1921—1930 թթ. և 1930—1933 թթ.: Մատենագիտությունն աչքի է զարնում նկարագրությունների ճշգրտությամբ, նյութերի որոշ մասն անոտացված է: Սակայն ցանկն ունի մի քանի թերություններ: Արդեն նշված ժամանակագրական սահմանափակվածությունից բացի, դրանից դուրս են մնացել պարբերականների հրատարակությունները, չեն ընդգրկված Լենինին վերաբերող նյութերը և այլն: Դրանք, իհարկե, ժամանակի մատենագիտական սկզբունքների անբավարար մշակվածության հետևանք էին: Վերոհիշյալ մատենագիտությունը դարձավ այն կայուն հիմքը, որի հիման վրա հետագայում զարգացավ հայ մատենագիտական լենինապատումը:

Վ. Ի. Լենինի ստեղծագործությունների հայերեն հրատարակություններն իրենց համեմատաբար ամբողջական արտահայտությունն ստացան արդեն հիշատակված 1950 թ. հրատարակված բիբլիոգրաֆիայում: Սակայն, ինչպես արդեն նշել ենք, այդ ցանկը համահավաք չէր, և դրանից դուրս էին մնացել մի շարք հրատարակություններ, իսկ նախասովետական շրջանն ընդհանրապես ընդգրկված չէր:

Հույժ զգալի էր Լենինի հայերեն հրատարակությունների ամբողջական, լիարժեք, մատենագիտական պատշաճ մակարդակով գիտաօժանդակ ցանկի անհրաժեշտությունը: Այն երևան եկավ միայն 1971 թ., երբ ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի, ՍՄԿԿ Կենտկոմին կից մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի և ՀՍՍՀ պետական գրապալատի համատեղ ջանքերով հրատարակվեց Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների մատենագիտություն 1904—1970: Այն կազմել էր Ե. Բաղդասարյանը:

Մատենագիտությունը կարելի է բաժանել երեք մասի՝ աշխատությունների հրատարակությունն ըստ հրատարակման տեսակի— ժամանակագրական կարգով, աշխատությունների այբբենական ցանկ և օժանդակ ապարատ: Առաջին բաժնում տրված են երկերը, ընտիր երկերը, առանձին աշխատությունները և թեմատիկ ժողովածուները: Ընտիր երկերի և թեմատիկ ժողովածուների բովանդակությունը ներկայացված է: Արժեքավոր է առանձին աշխատությունների և թեմատիկ ժողովածուների մասը, որտեղ ժամանակագրական կարգով նշված են նրա հրատարակություններն ըստ տարիների, որն ամբողջական պատկերացում է տալիս Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների տարեգրության մա-

եղած հայերեն նյութերի համար առայժմ հրապարակի վրա չկա ոչ մի բնույթի ցանկ:

Անհրաժեշտ է հրատարակել մարքսիզմ-լենինիզմի դասականների թեմատիկ ցանկեր: Այդպիսի ցանկեր առայժմ մեկ-երկուսն են: Մարքսիզմ-լենինիզմի դասականների մատենագիտական համակարգի ստեղծման գործում առաջանահերթ է Վ. Ի. Լենինի հրատարակությունների առարկայական ցանկի հրապարակումը:

Մտահոգիչ է նաև օգտագործման լայն շրջանակ ունեցող ցանկերի հրատարակման սահմանափակ տպաքանակի հարցը, որի պատճառով այդպիսիք չկան նույնիսկ շատ մասսայական գրադարաններում:

Անհրաժեշտ է պարբերական մամուլում ևս լուրջ ուշադրություն նվիրել մարքսիզմ-լենինիզմի դասականներին նվիրված մատենագիտության պրոպագանդմանը, քննարկմանը, մեթոդական հարցերի մշակմանը, որը մեծապես կնպաստի ցանկերի առավել արդյունավետ ու նպատակասլաց օգտագործմանը:



Адрес редакции: 375033, Ереван-33, ул. Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ **375033, Երևան—33, Բարեկամության 59 գ:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*Հանձնված է շարվածքի՝ 11.9.81—22.9.81: Ստորագրված է տպագրության՝ 1.10.81: ՎՖ 04626: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրությունը՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,4 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 15.832 Պատվեր՝ 2100:*

*Հկկ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.

# Ինչ կարդալ

**В. И. Ленин, КПСС о развитии науки.** М., Политиздат, 1981.

*Ժողովածուում լրիվ կամ համառոտաբար զետեղված են Վ. Ի. Լենինի աշխատությունները, նամակներն ու գրությունները գիտության զարգացման վերաբերյալ: Դրանցում արտացոլված են լենինյան գաղափարները մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական տեսության մեծագույն դերի, հասարակության զարգացման ոլորտում գիտության տեղի ու նշանակության, մեր երկրում կառավարման և արտադրության գիտական հարցերի մշակման վերաբերյալ:*

*Այստեղ ամփոփված են նաև ՍՄԿԿ փաստաթղթերը հայրենական գիտության հիմնական ուղղությունների զարգացման, գիտական կադրերի նախապատրաստման մասին:*

**Великий Октябрь и международное коммунистическое движение. М., Политиздат, 1981.**

*Գրքում զետեղված են սոցիալիստական համագործակցության երկրների, կապիտալիստական պետությունների և գաղութային լծից ազատագրված երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ականավոր գործիչների հոդվածները: Դրանցում քննարկվում են արդի համաշխարհային հեղափոխական պրոցեսի տեսական հրատապ պրոբլեմները:*

С. Калтахчян, А. Калтахчян— **Шаумян.** М., «Мысль», 1981.

*Գիրքը ներկայացնում է Վ. Ի. Լենինի հավատարիմ աշակերտ ու զինակից Ս. Գ. Շահումյանի բազմակողմանի գործունեությունը: Բացահայտված է Շահումյանի աշխատությունների տեսական ու գիտական նշանակությունը, աշխատություններ, որոնցում նա պաշտպանում է դիալեկտիկական ու պատմական մատերիալիզմը, լենինյան ուսմունքը կուսակցության դասակարգային պայքարի, ազգերի և ազգային հարաբերությունների մասին, ապացուցում մարքսիզմ-լենինիզմի հետևողական գիտականությունն ու համընդգրկելիությունը, պայքարում բուրժուական գաղափարախոսության և ռևիզիոնիզմի դեմ:*

**Марксистско-ленинская партия в политической системе социалистического общества.** М., Политиздат, 1981.

*Գրքում քննարկված են ՍՄԿԿ-ի և ԳՍՄԿ-ի գործունեության հիմնական կողմերը սոցիալիստական հասարակության քաղաքական սիստեմում, ընդհանրացված է պետական և հասարակական կազմակերպությունների նկատմամբ կուսակցական ղեկավարության փորձը, ցույց են տրված ՍՍՀՄ-ում սովետական քաղաքական սիստեմի և ԳԴՀ-ում ժողովրդա-դեմոկրատական կարգի հետագա ամրապնդման ուղիներն ու միջոցները:*

**За высокое качество и действенность идеологической работы.** М., Политиздат, 1981.

*Ժողովածուում ամփոփված են գաղափարախոսական աշխատողների՝ 1981 թվականի ապրիլի 20—25-ը Մոսկվայում կայացած համամիութենական խորհրդակցության նյութերը: Ներկայացված զեկուցումներում ու ելույթներում ընդհանրացված է գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի փորձը, վերլուծված են թերությունները, սահմանված են կուսկազմակերպությունների առաջնահերթ խնդիրները ՍՄԿԿ XXVI համագումարի հիմնադրույթների կենսագործման ասպարեզում:*

*Կ. ՎԱՐԴԱՆՅԱՆ—* ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությունը ագրոարդյունաբերական ինտեգրացման բնագավառում: *«Հայաստան» հրատ., 1981:*

*Գրքույկում ցույց է տրված, որ սոցիալիստական ագրոարդյունաբերական ինտեգրացման օբյեկտիվ անհրաժեշտությունը պայմանավորված է արտադրաուժերի զարգացման մակարդակով, բխում է արտադրության կենտրոնացման և համակենտրոնացման սոցիալիստական օրենքի պահանջներից, նպատակն է հասարակական արտադրության արդյունավետության բարձրացումը և արտադրահարաբերությունների կատարելագործումը:*

*Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ—* Մարտական «Կարմիր զինվորը»: *«Հայաստան» հրատ., 1981: Հայկական հրաձգային Թամանյան եռակի շքանշանակիր դիվիզիայի «Կարմիր զինվոր» թերթի նախկին խմբագիրը ներկայացնում է թերթի գործունեությունը մեծ Հայրենականում և հետպատերազմյան խաղաղ տարիներին:*

Գինը՝ 20 կ.
Индекс 77783 ISSN 0130—8114

# Գիտության և տեխնիկայի նորություններ

## ՆՈՐ ՄԻԱՌԵԼՍԵՐ

*Համբուրգում վերջերս շահագործման հանձնվեց նոր տիպի միառելս երկհարկանի ճանապարհ։ 12-տեղանոց ինը վագոնիկներ սլանում են ժամում 40 կմ արագությամբ։ Շարժումը կառավարվում է ավտոմատ՝ ԷՀՄ-ի օգնությամբ։ Երեք կայարաններից մեկում նստող ուղևորը ավտոմատի մեջ է նետում մետաղադրամը և սեղմում իրեն անհրաժեշտ կայարանի համապատասխան կոճակը, մագնիտային կոդով ստանում է տոմսը և տեղեկատու ցուցատախտակին կարդում այն կառամատույցի համարը, որտեղից պետք է մեկնի գնացքը։ Դուրս գալով կառամատույց, ուղևորը տոմսը գցում է հսկիչ հարմարանքի ճեղքից ներս, որից հետո կոմպյուտերի ազդանշանով ազատ վագոնիկը մոտենում է կայարանին։ Վագոնում հարկավոր է սեղմել դռները փակող կոճակը, որը և ճանապարհվելու ազդանշանն է։ Աղմուկից խուսափելու համար կամ, ինչպես այժմ են ասում, շրջակա միջավայրն ակուստիկ աղտոտումից պաշտպանելու համար վագոնների անիվները ռետինապատված են։*

## ԱՐԵՎԱՅԻՆ ԺԱՄԱՑՈՒՅՑՆԵՐ

*Ժամանակակից արևային ժամացույցների համար լույսը «միայն» էներգիայի աղբյուր է, որը փոխարինում է ավանդական լարովի զսպանակին կամ էլեկտրական մարտկոցին։ Ժամացույցի մեջ դրված արևի ութ էլեմենտները սովորական ցերեկային կամ արհեստական լույսը վերածում են էլեկտրականության, որը և սնում է ժամացույցի էլեկտրոնային բարդ համակարգը։ Միկրոկոմպյուտերն ապահովում է ժամացույցի ճշգրտությունը։ Արևային մարտկոցներն անընդմեջ աշխատում են 4 տարի (ԱՄՆ)։*

## ԱՄԵՆԱԱՆՎՏԱՆԳ ՎԱՌԵԼԻՔԸ

*Պարզվում է, դա ոչ այլ ինչ է, եթե ոչ... օդը։ Համենայնդեպս, այդպես է կարծում ավստրիացի նորարար Կարլ Լաան։ Ավելին, նա համոզված է, որ կանցնի ընդամենը մի քանի տարի, և արևմտաեվրոպական քաղաքների «մերսեդեսների» և «կադիլյակների» ծխով պատած փողոցներում կհայտնվեն բեռնատար ու մարդատար պնևմոավտոմոբիլները։ Գիշերը «վառելիքի» բալոնները խտացված օդով լցավորվելուց հետո դրանց վարորդները ցերեկը կանցնեն ոչ պակաս 70 կմ։*

*Ավստրիացի նորարարը գտնում է, որ իր գաղափարը մասնագետները կպաշտպանեն թեկուզև նրա համար, որ «պնևմոավտոն» զերծ է մի շարք այնպիսի թերություններից, որոնք հատուկ են ներքին այրմամբ շարժիչներով բանող մեքենաներին։ Այն անաղմուկ է, մթնոլորտը չի թունավորում բանեցված գազերով, կարիք չունի սառեցման բարդ համակարգի և ոչ պակաս բարդ հաղորդիչ մեխանիզմի։ Իսկ դրանով մի կիլոմետր վազքն արժե ընդամենը 1,5—2 պֆենինգ։*

## ԿՀԱՍՏԱՏԻ՞ ԱՐԴՅՈՔ ՊՐԱԿՏԻԿԱՆ

*Արյունատար անոթների վիրահատության ժամանակ բժիշկները երբեմն ըստիպված պատվաստում են արհեստական փոխարինիչներ։ Բայց և այնպես պլաստիկայից պատրաստված երակի և զարկերակի օգտագործումը մինչև այսօր բախվել է դրանք օրգանիզմին հարմարեցնելու պրոբլեմին, քանզի նման փոխարինիչների ոչ այնքան հարթ ներքին պատերը նպաստել են արյան վտանգավոր մակարդուկների գոյացմանը։ Ճապոնացի մի խումբ գիտնականների մշակած տեխնոլոգիան հնարավորություն է ընձեռում արտադրելու այնպիսի որակի արհեստական արյունատար անոթներ, որոնք կարելի կլինի կիրառել նույնիսկ ուղեղի վիրահատության ժամանակ։*